# ՀՆՈՒԹԻՒՆՔ

# ՀԱՅՐԵՆԵԱՑ

## Ի ԳԱՒԱՌՈՒՆ

## Երնջակու



ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆ

ԱՐԻՍՏԱԿԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՍԵԴՐԱԿԵԱՆ
ՄԻԱԲԱՆԻՑ ՍՐԲ ՈՅԷՋՄԻԱԾՆԻ






Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ԿԱԹՈՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

ՌՅԻԱ—1872

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ԳԷՈՐԳԵԱՅ Դ.

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

---

Հայրենեաց հնութիւնքն այսօրուան օրս հայրենասէր որդւոց մեծագոյն մասին անձկանկարօտ հետաքրքրութեանն զարթուցած են։ Եւ յիրաւի ի՞նչ կայ երկրի վերայ հասկացող սրտի համար առաւել փարելի և նուիրական քան հայրենիք, և ի՞նչ կարող է նորա դաժան վիրաց ու բազմադարեան մղկտացուցիչ խոցերու հանդէպ աւելի զգալի թուիլ, եթէ ոչ սիրուն հայրենեաց պանծալի կամ ողբալի հնութեանց նշխարեալ մնացորդք։ Մեր հայրենիքն վշտակոծ Հայաստանն լինելով, թէպէտ և մերթ ընդ մերթ յերևան կհանէ իւր ծոցէն այնպիսի յիշատակարաններ՝ որոց վերայ գրոշմած կտեանենք իւր արիասիրտ որդւոց կորովաբազուկ քաջագործութիւնները,

դիւցազնական սխրագործութիւնները, հայրենասիրական և ազատասիրական անձնանուիրութիւնները, փութաջան և մեծագործ աշխարհաշինութիւնները, և Առաքելական Ս. Եկեղեցւոյ կարգաց և կրօնի անաղօտ և անսայթաք պահպանութիւնը. սակայն շատ անգամ այն է՝ որ հնախոյզ աչքերն արտասուք քամելով պիտի նշմարեն այն գետինն ու քարերն՝ ոյք ներկուել ողողուել են բիւր անգամ Մեհրուժանեան, Վասակեան, Սարգսեան չարահոգի հայրենանենգ դաւաճանութեամբ և մատնութեամբ միլիոնաւոր ողորմելեաց թափուած արեան գետերով, այն շիրիմներն, ու մահարձաններն՝ որոց մէջ կհանգչէին անհեռատեսութեան և եսականութեան չար նախանձուն զոհ գնացած հայրենաշէն և աշխարհի օգտակար հոյակապ անձանց աճիւններն, այն կիսակործան շէնքերն, և դժուարանշմար աւերակներն՝ որոց տէարք և բնակիչք, է որ ի դառն գերութիւն վարեալ, է որ սովու, սան-

հնութեան վկայութիւնն մօտ ունենալ՝ բայց չունի, չէ կարող այնքան յարգ և վարկ վաստակել:

Հնութեանց նշանակութիւնն ժամանակէ ի վեր յարգի եղած է մեր ուսումնական ազգայնոց մօտ. և ոմանք իսկ ներկայ դարու աշխատասէր անձինքներէն այդ օրինակ գովանի ծառայութիւնն ցոյց տուած են ազգին և ազգային գրականութեանն. իսկ Եւրոպա՝ որ մեզմէ շատ և շատ յառաջ զգացած է նոցա ծանրակշիռ յարգն և նշանաւորութիւնն, մեզմէ նմանապէս և շատ յառաջ բազմաթիւ արևելախօսաց ուսեալ ճանապարհորդներ և հնասէր անձինք մեծագումար զոհիւք ղրկած ու հաւաքած ունին արևելից հնութիւնքն մանաւանդ մերս Հայաստանի՝. որ նոցա աչքը կհամարուի, և այսօր իւր յայտ եկած ճոխ հնութեանց անսպառ գանձիւք զարմացրել է զնա: Այժմ յիշատակեալ օտարազգի և Հայազգի բնախոյզ, բանասէրի, հնասէր, և տոհմագիրք

անձանց քրտամբք մեր մայր աշխարհի շատ գաւառաց և նահանգաց հնութիւնք և ազգի ազգի տեղեկութիւնները ապահով-ուած են ժամանակի կորստեան վտանգէն, բայց դեռ քանի կողմանք կան զրկուած այդ բաղդէն, որոց հետ և Նախիջևանի գաւառը, որք մինչև այսօր այցելուի մի չը հանդիպեցան, որոնք կարող լինէին մեր-կանալ իւրեանց ցարդ խնամօք պահած պատմական հազարաւոր հնութիւննե-րըն։

Յիշատակելոց վերայ իբրև շատից հը-նութեանց ականատես կհրաւիրեմ ան-ձանձիր աշխատասէր համազգեացս ուշադ-րութիւնն. իսկ ես այս աշխատութեամբն ինչպէս և վերնագիրն ցոյց կտայ, պիտի ջանամ երևան հանել միայն Երնջակ գա-ւառի հնութիւններն, որ ոչ սակաւ նը-շանաւոր տեղ բռնած ունէր ժամանակին մեր պատմութեան մէջ։ Ցաւիմք միայն, որ չյաջողեցաւ մեզ ըստ մեր բաղձանաց կցել սորա հետ պէտք եղածին չափ տոհ-

# ԵՐՆՋԱԿ ԳԱՒԱՌ

Ըստ Հայաստանի աշխարհագրական բաժանման համեմատ, Երնջակ գաւառ մեծին Հայոց հնգետասան նահանգաց տասներորդին՝ այն է Սիւնեաց տասներկու գաւառներէն մէկն է *)։

### Սահմանք.

Սահմանք գաւառիս են. յարեւելից Ծղուկ գաւառ (Սիսիան), յարեւմտից եւ ի հիւսիսոյ գետն Նախիջեւանի, եւ ի հարաւոյ՝ Գողթն գաւառ։

---

(*) Վարդապետ Կ. Շահնազարեան իններորդ ըստ կարգի կդնէ զՍիւնիս. տես նորա լոյս ընծա. Օրբելեան Պատմ. երես 5։

### Գետ.

Այս գաւառն մի միայն գետ ունի համանուն, որ սկիզբն առնելով Գողթեաց լեռներէն, Ջուղայի մօտ կխառնուի Երասխին։

### Լեռնք.

Լեռներն են սոքա. ի սահմանակցութեան Գողթն գաւառի՝ Գողթեաց բարձրաբերձ լերինքը. Շահկերտի դիմաց՝ Մեղրաքար (Բալլը-դայա) կոչեցեալն. յարևմտից նոյն աւանի՝ Երնջակաբերդ, որ նըշանաւոր է պատմութեան մէջ ըստ բազմադիմի անցից. ի հարաւոյ Գռնայի, և ի սահմանակցութեան Նորուն՝ Իլան-դաղը, (Օձալեռն), իսահմանակցութեան Գողթըն գաւառի՝ Գարուղաղ կոչուած լեռներն։

### Բերք.

Երնջակ գաւառը Նախիջևանի մասն լինելով, նորա նման իւր արգասաւոր ծոցէն յառաջ կբերէ և կպարգևէ ժիր մշակին տեսակ տեսակ առատ բարիքներ, բայց

է քանի՛ մի լեռնային մասերէն, որոց ցուրտ կլիմայն ներհակ է ջերմով անձնցող բերոց։ Երկրագործութիւն տեղւոյս բաւական մշակուած լինելով կարանայ առատ և մաքուր տեսակի ցորեան, գարի, բամբակ, հաճար, քնջիթ, կտաւահատ, սեխ, ձմերուկ, վարունգ ելն. Ծառապտուղներէն կգտնուի ընտիր ծիրան, տուփմին, սալոր, դեղձ, տանձ, խնձոր. ընկոյզ, սերկևիլ, կաղին, ելն. Այրակունեսի մէջ կը նշմարւին նաև պտղատու նշենի, թզենի, և նռանենի։ Այգիք շատ կան, միայն մշակելոյ եղանակն ամեն տեղ չգիտեն լաւապէս, մանաւանդ գինի պատրաստելն։ Հայաստանի դաշտաց և լերանց մէջ գտնուած ընտանի և վայրենի անասնոց, գազանաց, թռչնոց, և սողնոց գրեթէ տեսակներն կը գտնուին և այստեղ։

Հանք.

Այս գաւառիս մէջ մինչև ցայժմ յայտ եկած հանքերն են ոսկի, արծաթ, պղինձ, կիր, գիպս (գաճ), կայծքար, Ջրաղացա-

քար, ածուխ, և գիլ. ուստի կգտանուին
շատ տեղեր և տեսակ տեսակ հանքային
ջրեր։

## Գիւղորայք.

Երնջակայ մէջ գտնուած գիւղորայքն
են. Աբրակունիս, Գոռնայ, Բանանձեար,
Սալթաղ, Նորաշէն, Խոշկաշէն, Գեաղ,
Փորադաշտ, Շօռութ, Խանաղա, Դա-
զանչի, Ներքին, Միջին և Վերին Ըն-
զուրներ, Թէյմզող, Երաւխս, Միլաւ,
Խաչափարակ, Գըզձա, Ջամալդին, Ջու-
ղայ, Երազին, և Ազնուտ։ Երբև յիշատա-
կութեան անարժան կթողումք մեք Երա-
ւխս և Միլաւ փոքրիկ և աննշան գիւղերը,
իսկ միւսոց վերայ կսկսեմք խօսել կար-
գաւ, բայց ամենէն յառաջ Աբրակունիսի
մէջ գտնուած նշանաւոր մենաստանին վե-
րայ, որ յանուն Ս. Կարապետին։

### ՎԱՆՔ Ս. ԿԱՐԱՊԵՏԻՆ ԵՐՆՋԱԿՈՒ.

Հայաստանի հռչակաւոր վանքերէն մէկն
է և այս, յանուն Ս. Կարապետի, Աբ-
րակունիս գիւղի մէջ, Նախիջևան քա-

դաքէն չորս ժամու ճանապարհաւ կամ, չորս մղոնաւ հեռի։

Այս մենաստանի հիմնարկութեան թըւականն ազգային պատմագիրներէն չկարացաք գտնել որչափ և հետամուտ եղաք․ գուցէ միայն այնպիսի ձեռագիր յիշատակարանների մէջ գտնուի, զորս մեք չկարացաք տեսնել․ բայց հաւանած եմք ասել, որ այս մենաստանը պիտի շինուած լինի մետասաներրորդ դարու վերջերը․ ըստ որում պատմութեան մէջ կգտնեմք սորա նորոգուիլն չորեքտասաներրորդ դարու մէջ այսինքն յամի 1381 ընդ ձեռն Մաղաքեայ վարդապետի Դրիմեցւոյ․ իսկ հընոց ամուր շինութիւններն և վանօրէից վերայ գործ դրած ճարտարապետական ընտիր և կիրթ ճաշակն ի նկատի ունելով, չէ կարելի չկարծել թէ բաւական ժամանակ անցած պիտի լինի շինութեան վերայ, որ կարօտած է նորոգութեան։ Չամչեան մեծարգոյն Հ. Միքայէլ պատմութեան մէջ յամի 1330, Սիւնիթուաց

ծագման պատմութեան առթիւ կյիշուի և Գրիգոր Վարդապետ ոմն Ապրակունեցի իբր համախոհ նոցին. և Ապրակունեցի բառովն պէտք է հասկանալ այս մենաստանի մէջ եղող վարդապետ. վասն զի ցարդ ևս վանքն սովորաբար " Ապրակունեաց վանք ,, կոչուի, և մէջի գտնուած կրօնաւորը կամ վարդապետը " Ապրակունեաց վարդապետ ,,: Եթէ Ունիթոռաց պատմութիւնն չլինէր, գուցէ դեռ շատ անտաչան յիշուէր պատմութեան մէջ այս մենաստանը, ինչպէս նաև շատերը: Ռահխաթունեանց բազմարդիւն Յովհաննէս Եպիսկոպոսն, ինչպէս և ոմանք հաւանած են ասել իբր թէ առաջին մենաստանն Երնջակայ եղած է Երնջակ ամրոցի մօտ յանուն Ս. Գէորգայ. իսկ " Եռայի վարդապետ իսպառ լքեալ զայն՝ գայյայս տեղի և նորոգ հիմնարկութեամբ այս կառուցանել փառացի տաճար ի կոփածոյ քարանց յամին 1551, յանուն սրբբոյն Յովհաննու Կարապետի,, (տես ըՍ-

տորագ. Կաթ. Էջմ. և հինգ գաւառացն Արարատայ. Աշխ. Յովհ. Եպիսկոպոսի Շահխաթունեանց. հատ. Բ. եր. 319)։ Այս կարծիքն չէ և իմը. և ես ընդհակառակն կըպնդեմ, որ յիշատակեալ Ս. Գէորգ անուն մենաստանն (որոյ համար տե՛ս ի ներքոյ) կարող էր վանք Երնջակու համարուիլ քանի որ համանուն գաւառին մէջն է, բայց ոչ աւելի հին և նշանաւոր քան այս ներկայս, որ կկոչուի յանուն Ս. Կարապետին. ընդհակառակն դեռ Ս. Գէորգ անապատի անունն պատմութեան մէջ չտեսած, և դեռ չկարդացած որ Եսայի վարդապետն է շինած վերջինս յանուն Ս. Կարապետին, կգտնեմք զայն չորեքտասաներորդ դարու մէջ նորոգուած ընդ ձեռն Մաղաքեայի Ղրիմեցւոյ, և այնուհետև իբրև ժամանակի երևելի մենաստաններէն մինն երևելի անձանց բնակարան եղած. մանաւանդ որ Եսայի վարդապետէն բաւական յառաջ ծագած Լատինա-Հայ Ունիթոռաց շփոթութեանց

ժամանակը սպառեց „Վաղրակունիքի մենաստանքս‟ մէջ զօրացած և զինուորուած կռուեցան Արտանեցին, Տաթևացին, և այլք, և ոչ ուրիշ տեղ: Եթէ արդարեւ յանուն Ս. Գէորգայ եղած վանքն՝ չէն էր այս միջոցներին մինչև ցՆշայի, անշուշտ պատմութեան մէջ պիտի տեսնէինք նորա առաջնորդաց կամ կրօնաւորաց անուններն և արարքն:

Ցիրաւի երկրի բնիկ բնակչաց աւանդութիւնն ցորդ եւս կենդանի մնացած է, որ այս մենաստանն փոխադրուած կհամարէ այս տեղ, բայց միևնոյն աւանդութիւնն ցոյց կտայ և առաջին տեղն՝ „Հին վանքատեղ‟ կոչելով զայն՝ որ կանկանի մենաստանիս հիւսիսակողմն գրեթէ քառորդ մերոստ հեռի անտառի փոքրիկ բլրակի մի վերայ, որոյ վերայ դեռ կան նաև նշմարելի աւերակք հնոց հիմանց շինուածոց. և շատ հաւանական է՝ որ ժամանակին հանգամանքը կամ գրից անյարմարութիւնն տեղափոխութեան տեղիք տուած լինին: Ինչ-

պէս մենաստանիս գլխով անցած անցքերէն՝ շատ քիչը հասուցել է մեզ պատմութիւնն, նմանապէս և նորա Առաջնորդաց կամ Վանահարց կամ գոնէ ի նմա բնակւած նշանաւոր անձանց սակաւուց ոմանց միայն անուններն։

Զորեքտասաներորդ դարու մէջ այսինքն յամի 1376 կերևի Առաջնորդ վանիցս Սարգիս վարդապետ ոմն. սորա օրովը կըտեսնեմք բնակուած այս մենաստանի մէջ Մաղաքիա վարդապետ Կրիմեցին Նորոգող վանիցն, և Յովհաննէս Որոտնեցի Կախիկ մականուանեալն, որդի Իւանեայ իշխանի, աշակերտ Եսայեայ վարժապետի Նչեցւոյ, որ ձգելով Տաթևի վանքն, ու հետն առնելով շատ մի կրօնաւորներ կգայ այս տեղ, և աջակցեալ Սարգիս ու Մաղաքիա վարդապետաց՝ կաշխատեն ողորմելի ժողովուրդն պաշտպանել բանսարկուի չարութեան գործիք — Լատինահայ Ունիթոռաց բորբոքած ազգաւեր հրդեհէն։ Ժամանք բան. Հ. Միքայել Չամչեան

ի՞նչպէս չկրցան հայրի ճշմարտութեան դէմ մեղանչելով ջանալ ցոյց տալ. կամ հաւատացնել որ Որոտնեցին, Տաթեւացին, Սարգիս եւ Մաղաքիա վարդապետք եւս համամիտ եւ համակամ էին Ունիթոռաց խորհրդոցն եւ վարդապետութեանցն. ըստ ի՛ս եթէ սեաւ գոյնն Հռովմայ գահին կամ Հ. Միջակէին ախորժելի գոյն մի լինէր, անկարծիք պատմութեան մէջ քանի տեղ, եւ իւրաքանչիւր տեղն ամբողջ գլուխներ պիտի կարգէր ու մրեր մածովի սեւ լինելն ապացուցանելոյ համար։

Մաղաքիայի վանքը Նորոգելէն զկնի, Յովհան Կախիկ Որոտնեցի կնստի Առաջնորդ վանիցն, եւ ժողովելով աշակերտներ կուսուցանէ ինքնին. իսկ Սարգիս վարդապետ կկարգուի Առաջնորդ Աստապատի վանուցն, եւ Մաղաքիա վարդապետ Փորաղաշտ գիւղն եղած միջոցին յանկարծամահ կմեռանի, որոյ համար Չամչեանն կը գրէ, ‘‘Նոյն համբաւ թէ Ունիթոռք դեղեալ իցեն զնա,, (հատ. Գ. գիրք Օ.

կնքեան. կերևի միայն յամի 1738 և ազգա-
կան ՈՂՋԻՆ Մկրտիչ շուշտակ Եպիս-
կոպոս, եղբայր Ղազարու Ջահկեցւոյ;
Այլա կուզան, Կարապետ վարդապետ
Նախիջևանցի, յետ Կարապետի Մատ-
թէոս Եպիսկոպոս Նախիջևանցի, յետ
Մատթէոսի Փիլիպպոս եպիսկոպոս, յետ
նորա Կարապետ վարդապետ Բ. և յետ
նորա Երեմիա վարդապետ Մելիք-Թան-
գեանց Աբեանեցի: Ասոցա՝ յորում ամի և մին-
չեւ ցե՞րբ պաշտօն վարելն, նոյնպէս ինչ
գործ տեսանելն չկարացաք հաւաքել բայց ի
վերջնոցն. իսկ անուանքն քանի մի հին
ու նոր կոնդակներէ և նամակներէ առինք;
Երեմիա վարդապետ դեռ ի կենդանու-
թեան Կարապետի կարգուելով Վանա-
հայր ուխտիս, և մինչև ցամն 1865, այն է
մինչև ցմահ վարելով պաշտօն, մեծ յարգ
և վարկ կվաստակէ շրջակայ ժողովրդակա-
նաց մէջ, և իւր մեծամեծ ու գովելի վաս-
տակօքն, սրտառուանց ծառայութեամբն,
ու ազգի ազգի շինութեամբքն; շնորհակալ-

լեաց արժանի է։ Եւ թէպէտ շինուածոց մէջ չի ականուի բնաւ կիրթ ճաշակ, բայց որ գոնէ նա իւր կարողութեան չափ ջանացեր է պայծառացնել մենաստանն, քան քանդել զայն, և եղբարց ու ազգականաց տները լցնել, խանութներ բանալ ևլն., ամենայն իրաւամբ պիտի գովեստներ տանու, և տուած է։ Այս մենաստանի դիրքը կանկանի դիւր տեղ մի, և իւր չորս կողմը նայողի աչքի առաջ կբերէ գեղեցիկ և ծիծաղկոտ տեսարան. Հողապատ պարիսպ մի բոլորած կպատէ զնա. արևելեան դարպասի տակէն կանկանի մեծ առու մի, ուստի կը վազէ կանցնի մռնչալով և դղրդմամբ զարնուած յորդ անձրևներէն երբեմն երբեմն բարձրացած հեղեղ զայրագին։

Շինութիւն տաճարին սադաշէն, կոփածոյ քարամբք և գեղեցիկ ճարտարապետութեամբ. կաթուղիկէ մի բարձր և վայելուչ կերպով կանգնուած ի թրծեալ աղիւսոյ, աւելի շուք կբերէ տաճարին. ունի երկու դուռն՝ արևմտեան և միւսն հարաւային.

եզերքը արևմտեանին զարդարած են ազնիւ քանդակագործութեամբ. երկայնութիւն տաճարին է 23 քայլ, և լայնութիւնն 19. Թաղակապ տանիքը եկեղեցւոյն կաթուղիկէիւ հանդերձ հաստատուած է չորս մեծամեծ սեանց վերայ. ունի սեղան պատարագելոյ մի միայն, և երկու աւանդատունս, որոց առջև մէկի վերայ դարձեալ մի մի վերնատուն. աջակողմեան աւանդատան կամ խորանի մէջն էր պահուած "Օրհնանքահողը", որ միևնոյն դրսի հասարակ հողն է, բայց ծածուկ լցուած այստեղ կբաժանուէր պարզամիտ ուխտաւորաց վերայ, իբր սպեղանի զօրեղ. Ճարտար խորամանկութիւնն և շահասիրութիւնն ինչեր առնել չի տայ: Զախակողմեան խորանին է պահարան մասանց սրբոց. այս խորանի յատակը աղիւսատալ կազմել տալու ժամանակին հանդուցեալ Ներսէս վարդապետն տեսած է դուռն մի գաղտնարանի. ուստի անցնելով մինչև բուն սեղանոյ տակին, գտած էր բաւական ձեռագիր մատեաններ, Թերևս

և ուրիշ անօթեղէններ կամ զարդեր։ Իւրաքանչիւր խորանի վրան ճակատին դրըւած է մի մի փոքրիկ գեղաքանդակ խաչքար, և իւրաքանչիւրն ի պատուանդանի խաչին ունի արձանագիր,—

Զախակողմանն է այս. "Սուրբ խաչս յիշատակ է Տէր Եզարիա Եպիսկոպոսին և ծնողաց նորին Հաւրն Ալթունպաշին, և մաւրն Փայխաթունին յիշեցէք ի Քրիստոս. Թվին Ջ.ԻԳ.„ . իսկ աջակողմեանն է. "Ս. Խաչս բարեխօս առ Քրիստոս Մահտեսի Կիրակոսի և ծնողաց Շահունին Թվին Ռ.ՃԳ.„։ Եկեղեցւոյ մէջն նկարուք զարդարուած է եղել, որոյ մնացորդքն սեղանոյ ատենաց և կաթուղիկէի վերայ կարտափայլեն ոչ բոլորովին անկիրթ ճաշակ. իսկ մնացեալ տեղերն ծածկած է ապիտակ սուաղ։ Բաց ի յիշատակեալ արձաններն, նաև արտաքուստ երկու խաչքարանց վերայ եղեալ կայ գրութիւն. առաջին արձանագիրն է արևմտեան որմոյ ճակատին քուսամնէն. քարէր հաստատուած

խաչքարի պատուանդանի վերայ այսպէս. “Եսայի և Գ.ազար վարդապետ շինող.ք թվ. Ռ”. և միևնոյն խաչի թևոց մէջ տեղը այսպէս. “Թվ. ՌՃ՛Է”: Երկրորդ խաչքարն է հիւսիսային որմոյ վերայ լուսամուտէն բարձր հաստատուածը, որ ունի այս “Եսայի վարդապետ շինող. թվ. ՌՃ՛Գ”: . . .

Ունեցած է այս տաճարն յարևմտից կուսէ գաւիթ փոքրիկ քարամբք և թըրծած աղիւսով շինեալ. այժմ միայն գաւթի կամարաց հիմունքը կամ բարձքը կը նշմարուին չորս տեղ. երկու բարձերի վերայ հանգուցեալ Ներեմիա վարդապետն շինել տուած է կոփածոյ քարամբք փոքրիկ զանգակատուն, որ ոչ միայն թերի մնացած է իւր մահուամբն, այլ քարերի կրանիւթ լինելուն պատճառաւ այժմ կործանման վտանգի մէջ է. ի հարաւոյ կըցուած է տաճարիս մատուռ մի փոքրիկ երկարաձև յանուն Ս. Ստեփաննոսի, նոյնպէս կոփածոյ քարամբք և վայելչակերտ,

յիշատակ Շօռութեցի Խօջայ Եյվազին. որոյ յիշատակագիրը ի ներքս մատուռան կամարի երկու ծայրերին գրուած է կարմիր գերով այսպէս.

"Ի Թուոյ ազգիս մեր Հայկի,
Հազար հարիւր վաթսուն և երեքի.
Խօջայ Եյվազն գովելի,
Յոյժ բարեպաշտոն ցանկալի.
Տեղեաւ գոլով Շօռօթեցի,
Շինեաց տաճարս այս նազելի.
Յանուն Ս. Ստեփաննոսի
Նախավկային մարտիրոսի.
Իւրն յիշատակ է միշտ կենդանի,
Որով Քրիստոս պատարագի.
Մասն և բաժին իւրըն լիցին,
Եւ ծնողացն Մկրտչին և Կատարին.
Եւ կողակցին Թաւուբկին, և
Քեռուցն Աննայուն և Փառանկուն.
Եւ Գատերացն և իւր տան
Արքանեակն է Մարգարիտն,
Զոր Տէր Աստուածն ամենայնի,
Զինքն ի ցասմանց անփորձ պահի.

Ներկայ եմնոք յայս աշխարհի,
Պայծառ փառօք ի յաւէտնի.
Ըմթուս մեծին Յովհաննիսի,
Քուրմ օգնական միշտ լինիցի.
Ու է առաջնորդ թէ մարմնոք,
Նմք յԸ. յմողէն շնորհակալ„ ։

Այս մատուռն Ս. Ստեփաննոսի ունի իւր տանեաց վերայ հաստատուած երկյարկ զանգակատուն. առաջին յարկն քառաչէն՝ յիշատակ Դախչեանցի Աղամալին, որոյ արձանագիրն դրուած կայ արեւմտեան հարաւոյ սեան ճակատին այսպէս. „Յիշատակ է զանգակատունս Դախչուանցի Աղաջանի որդի պարոն Աղամալին ի ՌՃՂԴ. թուին„. Երկրորդ յարկն կանգնեալ յաւուրս Ներսէսի վարդապետի Թրծած աղիւսովք, յիշատակ է Ըուշեցի քարնապաշտօն Աստուածատուր Ըահմուրատեան. որ և ունի յարեւմտեան որմն զանգակատան ագուցեալ փոքրիկ մարմարիոնի վերայ իւր յիշատակագիրը։

## Ս. Կախանդ.

Տանձարի արեւելակողմն քարափի մէջ բաւական խորութեամբ փորուած ջրոյ աւազան մի կայ, ուր անդ հոսել է յառաջ աղբիւր ցուրտ ջրոյ " Ս. Կաթանք ,, անուանով. և ինչպէս կպատմեն, ամեն կիւրակէ առաւօտ երեխաները ժամ կը վազէին այս տեղ. աւանդութիւն բնակչաց Բագրատունեաց կասէ թէ՝ այնքան յորդ ջուր կվազէր այս սուրբ Կաթանքէն, որ մինչև անգամ Պարսիկ աւազակ խումբերէն շըրջակաց Հայ գիւղորէից բնակչաց այս մենաստանի մէջ ամբացած ժամանակը՝ բազմաթիւ գերդաստանաց պիտոյից բաւականութիւն կտար. և ցամաքեցաւ կասեն վատաբարոյ մարդոյ մի մեղաց պատճառաւ, որ գարշ դոյլ ծով անարգած էր սորա յարգը Վարդավառի խառնիճաղանճ բազմութեան ժամանակը:

Երնջակու Ս. Կարապետի այս մենաստանը առ հասարակ տեղական Հայ և Մահմետական բնակչաց մէջ հռչակուած է. իբ-

րեւ բուժիչ խայթուածոց օձից. Երբ որ մէկը հարաւ օձէն, պէտք է գիտել որ իսկոյն կբերուի այս տաճարի դուռն. ուր օրհնութեան ստացեալ հողէն (որոյ համար յիշած եմք) քիչ մի օձահարի բերանը ձգել տալով, և քիչ մի ջրով շաղղած խայթուածի վերան կապելով կմխամանուին բոլորովին: Այս դէպքը քանիցս անգամ կրկնուած է իմ օրովս և տեսած եմ որ ինչպէս Հայ, նոյնպէս և Մահմետական օձահարներն այնուհետև որչափ ուրախութիւն կզգան իւրեանց մէջ: Այսպիսի փորձերով կարելի է կշռադատել թէ՝ ներքին անդորրութիւնն սրտի որչափ ներգործութիւն կարող է ունենալ մարմնոյ վերայ:

### Մատուռն Վանքը.

Ե. Հողարոքրեան ստացեալ Ս. Նշան, արծաթեայ մեծադիր ոսկեզօծ քառաթև պահարանի մէջ. այս Ս. Նշանն ոմանք կը համարեն լինել մասն կոնքին, որի մէջ Քրիստոս իւր աշակերտաց ոտները լուաց.

իսկ ոմանք մասն Թաշկինակի Տեառն, առ տեղ-
ւոյս առաջնորդ Մատթէոս Եպիսկոպո-
սի, ներկայ միջոցէս յիսուն տարւոյ չափ
յառաջ առ ժողովուրդն ուղղած օրհնու-
թեան թղթին մէջ վերջինն կծանուցանէ,
այսպէս սկսելով, ՙՙ Ի դրանէ Նրմիջակու
Ս. Կարապետի շնորհալի տաճարէն, և Ս.
Թաշկինակէն Քրիստոսի . . . . . . ՚՚ եւլն. իսկ
Մանուէլ Վ. Կիւմիւշխանեցի կհամարէ
լինել առաջինն; ՙՙ Հազարափրկիչ ՚՚ կոչ-
ւելոյ պատճառն կմեկնէ աւանդութիւն
բնակչաց երկրիս, և կհաստատէ նոյնն լի-
նել որ ինչ ՙՙ Մարգարդանեաց ՚՚ սուրբ
Նշան կոչուելըն, հին յիշատակարաննե-
րի մէջ: Գահկեցւոյ ՙՙ Յանկալի դրախ-
տի ՚՚ 672 երեսին՝ այս սուրբ Նշանի հա-
մար կպատմուի թէ՝ երբ որ Լանկթա-
մուր կգերէ Սիւնեաց երկիրը, մի ի գերե-
լոցն Եպիսկոպոս Յովհաննէս անուն այս
սուրբ Նշանն յուսն կապած կձգէ զինքն
ի գետն և ՙՙ շնորհօքն սուրբ Նշանին գը-
տայր ի վերայ ջրոյն՝ որպէս ի ցամաքի ՚՚

գերեվար զօրքը տեսնելով կպարհուրին և
կյայտնեն Լանկ-Թամուրին, որ երդմամբը
կհաւատացնէ չմեռանել, մինչև թէ գայ և
պատմէ իրան թէ ո՞ր զօրութեամբ ջրոյ
վերայ անմեռաս կընթանայ. և եպիսկոպոսն
մօտ գալով կյայտնէ թէ՝ այս Ս. Նշանի
զօրութեամբ որ ինձ հետ է. Թագաւորն
հրաշէց վերայ զարմացած կասէ եպիսկոպո-
սին, ինչ որ կուզես՝ խնդրէ և առ. և ե-
պիսկոպոսն ցոյց տալով մօտակայ փոքրիկ
մատուռն մի՝ կասէ, խնդրեմ որ որչափ գե-
րիք պարունակուին այս մատրան մէջ՝ ա-
զատ լինին. որ և իսկոյն կկատարուի. բայց
մտածնները սուրբ Նշանի զօրութեամբ ա-
ղաւնոյ թև առած լուսամուտէն կթռչին
կերթան, և այսպէսով կարճ միջոցի մէջ
գերիքը կվերջանան, և մատուռն չէ լցուի.
զօրքը ապշած ներս կմտնեն, և հաւատ լի-
նելով հանգամանքին, իսկոյն ահարեկ կը
թողուն կմեկնին անտի. այսպէսով սուրբ
Նշանն երկու անուններ կառնու. "Աղ-
ղաղաւնեաց," որ մարդկանց աղաւնւոյ թև

պարգևելով կաղապարէ, և " Հազարափըրկիչ " որ հազարաւորները կփրկէ. Նոյն մատուռն՝ որոյ համար կպատմուի այս հըրաշքը, և ուր սուրբ նշանն երկար ժամանակ մնացած է մինչև ցփոխադրութիւնըն, կոչի այժմ " Գրիգորի վանք," և է Նախիջևան գաւառի Արթինջ գիւղէն եօթն վերստ հեռի, այլ ամայի և լըքեալ:

Հայր Միքայէլ Չամչեան առասպելեաց կարգը դասելով այս աւանդութիւնն, կը գրէ. " այլ այս առասպելք չունին պէտս քննութեան. և թէ կայցէ խաչ այնպիսի անուամբ, մի ոմն ի գեղջից յօրինեալ իցէ զայսպիսի անհեթեթ պատճառ, փառս յարմարելով զնշանակութիւն անուանակոչութեան նորին: Եւ դարձեալ, " Այն է զարմանալին, զի Գ. Ահկեցին իբրև ստոյգ ինչ ի մէջ բերէ զայս. բայց թուի թէ ոչ ինքն, և ոչ միւս պատմողն հաւատան այնմ՝ զոր գրեն" (տես Չամ. Պատ. հայ. Գ. ծանօթ. Զ. գլոց եր. 881—882):

Պատմական ապացուցութեամբ ստուգուած չէ՞ թէ Երբ, և ուստի՞ բերուած է Ս. Նշանս, կամ Երբ փոխադրուած այս Մենաստանը. միայն Չ. Չահկեցին կգրէ, որ Թադէոսի առաքելոյ Հայաստան բերած խաչն է։ Վերջին ժամանակներս Կիւմիւշխանեցի Մանուէլ վարդապետն, իւր Սևանայ վանուց ստորագրութեան մէջ կ՚յիշէ թէ՝ Թադէոս առաքեալն Կոնքի մասերէն երեք խաչ շինելով իւր ձեռամբն բերած է Հայաստան. յորոց միոյն այս Նորընջանկու Հաղարափրկիչ Ս. Նշանը, միւս՝ Սևանայ վանուցն, և երրորդն՝ Գրիգորիօպոլ քաղաքին Խրիմու։ Այս Հաղարափրկիչ Ս. Նշանս ոչ միայն երկրի Հայ բնակչաց, այլ և օտարաց և նոյն իսկ Մահմետականաց ակնածելի և նուիրական է, և ես քանիցս տեսած եմ Մահմետականներ զոհիք եկած յերկրպագութիւն. ամեն ժամանակ կան սորա ջերմեռանդ ուխտաւորները. և երբ ձախորդութիւն կամ ծօտալուա վտանգ կամ ցաւ պատահի ժո-

զոմբուլեան և երկրի, ամենքն առ հասարակ ջերմեռանդագին սրտիւ կդիմեն դէպ ի սա, և շրջեցնելով իւրեանց մէջ Թափօրական հանդիսիւ՝ կհայցեն բարեխօսուԹիւնն յօգնուԹիւն։ Բաց ի այս ժամանակները, Նախիջևանի բարեպաշտ ժողովրդոց վաղեմի սովորուԹիւնն է ամեն տարի Կանաչ Կիւրակէին շքեղ հանդիսիւ քաղաքը տանել։

Բ. Եղ Ս. Կարապետին Յովհաննու արծ. ոսկեզօծ։

Գ. Եղ Յովհաննու Ոսկեբերանի արծ. ոսկեզօծ։

Դ. Խաչ արծ. մեծադիր մասամբ Ս. Կարապետին. յիշատակ տուեալն վանիցս Ջուղայեցի Յակոբը ԿաԹուղիկոսէն Թվ. ՌՃԵ։

Ե. Խաչ արծ. չիֆԹիշէ, մասամբ Պետրոսի առաքելոյն։

Զ. Խաչ արծ. չիֆԹիշէ, մասամբք Ս. Կարապետին և Պետրոսի Առաքելոյն։

Է. Խաչ արծ. մասամբ Կենաց Փայտի։

Ը. Խաչ արծ. մատանի Ս. Կարապետին

Թ. Խաչ. արծ. չէֆթիչէք երեք անյայտ մասամբք:

Ժ. Ցուփք երկու՝ մինն արծ. ոսկեզօծ, միւսն փայտեայ, պարունակեն զմասունս սրբոց, այլ չէ յայտ թէ որոց:

Ձեռագիր ճառընտիր Մշոյ.

Չիք տարակոյս որ այս մենաստանին պիտի Հարուստ գրադարան ունեցած լինի, բայց դժբաղդաբար կորցրել է ամենը մեր Հայաստանի միւս վանօրէից նման, է որ Հարստահարութեանց և յափշտակութեանց և է որ տգիտութեան խաւարի թանձրանալուն պատճառաւ, որով յարգ և արժէք չունենալով դիւրաւ կարող էին ոչնչանալ. այժմու ունեցածներն միայն քանի մի հատ ձեռագիր Աստուածաշունչ և Աւետարան են, դիպուածով գրու-նուած ինչպէս յիշած եմք, որոց մէջ նշանաւորներն են.

Ա. Աւետարան փոքրադիր ամբողջ, պատկերազարդ, ընտիր գրչագիր գրեալ ի

ձագաղաթի ի Կ. Պօլիս ի թուին Հայոց ՌՄԼԵ. յԾովքա գաղթէ Հանգեցւոյ. ունի ի վերջն յիշատակարան գրողին և ստացողացն՝ Մարինոս կուսի « Որ եսու (ասէ) զայս ոսկեզօծ սուրբ Ա. Աւետարանս յիշատակ հոգւոց մերոց և ամենայն արեանառու ազգատոհմին մերոյ՝ կենդանեաց և ննջեցելոց ի դուռն մեծի անապատին Սեվանայ, որ յերկրին Գեղամայ . . . . . ի թուականին Հայոց ՌՃԻԵ», և Մկըրտիչ վարդապետի, որոյ յիշատակարանն է « Պարզեալ երես ի գետնի եղեալ աղաչեմ ի մաքրափայլ աղօթից ձերոց, ով սրբասնունդ հանդիսորդք սուրբ գեղեցկանկար և աստուածաբան տառիս, յիշեցէք ի Քրիստոս զվերջին ստացող սորին զՏէր Մկրտիչ բազմամեղ վարդապետս՝ որ է առաջնորդ Սրբոյ Կարապետիս որ ի գաւառիս Երընջակ: Որ և զայս ոսկեկազմ և սուրբ մատեանս աստուածային ետ յիշատակ ի սմա: Նաև զծնօղք նորին զտէր Մկըրտիչ քահանայն, և զԷ_ապիկան հեղ[illegible]

դին և եղբարք նորին ըստ մարմնոյ զտէր Ղ․ազար քրտնաջան վաստակաւոր Հայրապետն ամենայն Հայոց և զտէր Ընդրէաս պարզամիտ քահանայն . . . . , . ի Թուականիս Հայոց հազար հարիւր իննըսուն և վեց ,, ։

Բ․ Աւետարան փոքրադիր ամբողջ գեղազարդ պատկերօք ընտիր գրչագիր գրեալ ի մագաղաթի․ Թուականն և անուն գրչին անյայտ․ ունի ի վերջն յիշատակարան ստացողին — Շ․օռօթցի Խօջենց Մկրտչի որդի մահտեսի Հայրապետին, այլ անթուական։

Գ․ Աւետարան փոքրադիր ամբողջ գըրեալ ի թղթի․ ի սկիզբն ունի նօտրագիր յիշատակարան ստացողի ի տեղիս տեղիս եղծեալ, և է այս, ,,Նուաստ ծառայս Աստուծոյ Գրիգորի . , . . , անք , . . . . զաստուածապատում մատեանս ի , . . . արդեանցս ի . . . եղուքն ինձ և . . . . , ոց իմ . . . . . անկեալ ամենից , . . . . ք . . ումայ յիշեսջիք յարժ , . . , Թէ ձեր զքս-

տացող . . . . . խմ․ և որք յիշման զմեզ․
. . . . զինքն իւր երկնից արքայութեանն
. . . . առնէ ամէն գրեցաւ Թվ․ ՊԵ ,,․
ի վերջ Աւետարանին Մատթէոսի ՙՙ Օրհ-
նագաւղ սուրբ աւետարանիս զգերապա-
տիւ . . . . . . զաստուածասէրն և զմոր-
գասէրն ամենայն զարմիւք ծնողաւք և
բնաւին ազգականաւք յիշեսջիք ի Քրիս-
տոս Աստուած ի քաւութիւն ամէն ,,․
իսկ ի միւս երեսթղթոյն ՙՙ Վերատին ըս-
տացայ զաստուածախօս սուրբ Աւետա-
րանս ես Նուաստ ծառայս Աստուծոյ տի-
րացուս Եղն․ . . . . և եդաք ի սուրբ ուխ-
տըն ի վանքն Ապահունեաց ի սուրբն Նի-
կողայոս . . . . գրեցաւ գիրս Հայոց Թը-
վականին ՊԺՕ․ մարտի ԻԲ . . . . . . ,,․ ի
վերջ Աւետարանին Յովհաննու ՙՙ ի Թը-
վականիս Հայոց ՌՃԴ․ ի Հայրապե-
տութեան Ս․ Էջմիածնի Տ․ Յակոբայ և
ի Թագաւորութեան փոքրն Շահաբասին,
ես Յովհաննէս եպիսկոպոս սպասաւոր և
վերակացու Սաղմոսավանից և Լուսաւորչի

որն Յակոբայ եղաւ սուրբ տառս ՚ի վանս Ներինջակայ ի վայելումն հեղահոգի մեծ վարժապետին Նասայեայ, զոր յայսց աւուրըս նոր նորոգեալ կոփածու վիմով և գեղեցկազան յօրինուածով զսուրբ եկեղեցին որ Ս. Կարապետ վերաձայնի, որ և իսկ յորդորիչ եղև սուրբ գրոյս, զի անջնջելի յիշատակ կացցէ ի սուրբ ուխտս Առաքելունեաց ,, :

Զ. Աստուածաշունչ մեծադիր ոսկեզօծ նկարուք և փառազարդ պատկերօք ընտիր և զարմանալի գրչագիր գրեալ ի մագաղաթի ամբողջ. իսկ շատք ի պատկերացն և նկարացն միան դեռ թերիք և շատիցն դեռ տեղիքն թողեալ միան առանց սկսանելոյ. չունի յիշատակարան.

Է. Աստուածաշունչ մեծադիր գրեալ ի մագաղաթի ընտիր գրչագիր ծաղկանկար. այլ ի խոնաւութենէ ի տեղիս տեղիս եղծեալ և խրթնացեալ. ունի երկար յիշատակարան, յորում և պատմին համառօտիւ արարք և խռովութիւնք Եղիազարու

Ընթացցուոյ. ստացող գրոյն է Գահկեցի Հայրապետի որդի խօջայ Խմիրզան, որ «Ետ յիշատակ զսա անջնջելի և անանց առ սուրբն սիօն, բարձրաբերձ գահն, և յերկնաքատակ աթոռն Երընջակու . . . . ի թուականութեանս Հայկականի սեռի ՌՃ՛ և ԺԳ ամի ի ծովապար և յարքայանիստ քաղաքն Աստամբուլ,,:

Ը. Նարեկ միջակադիր, անթերի գրեալ ի թղթի ի թուին ՌՃ՛ՂԷ:

Թ. Մաշտոց, գիրք ծիսակատարութեան, մեծադիր գրեալ ի մագաղաթի ընտիր գրչագիր. չունի յիշատակարան:

Կալուածք Մենաստանին.

Մենաստանս ունի հարիւր խալվարաչափ հող, յորմէ քառասուն խալվարն անջրդի. նմանապէս այգի մի, ծառաստունկ պարտէզք երեք, ջրաղաց մի և ձիթահան մի:

Արդիւնք Մենաստանին.

Այս վանքի արդեանց աղբիւրներն են, երկրագործութիւնքն, յուխտաւորաց գո-

յացեալ նուէրք, Սարդարապատի հանդիսաւոր ուխտի արդիւնքն, և այդոց մասանց ըստ սովորութեանն ի Նախիջևան և յայլուր տանելն:

Շինուածք Մենաստանին.

Քսան տարի յառաջ այս վանքը գրեթէ օրինաւոր սենեակներ ունեցած չէ կրօնաւորաց և հիւրոց բնակութեան համար բաց ի հարաւակողմն եղած "առաջնորդարան", տասնեցեալ թաղակապ երկյարկ սենեակը, մինչև որ Ներսէս վարդապետս յառաջու իւր կանգնել տուած է քանի մը սենեակներ:

Գերեզմանատուն.

Հիւսիսակողմն պարսպէն մօտ փոքրիկ բլրակի վերայ է գերեզմանատուն վանիցս, ուր ամփոփուած են մարմինք միաբանից անդրույն. Նոյն կողմն դարձեալ, բայց բուն պարսպի տակ կան քանի մի գերեզմաններ, որք կրեն խոյաձև տապանաքարեր. կերեւին սոքա բաւական հին, բայց դժուար է որոշել թէ որոյ ժամանակի, և որոց մար-

շուշտ նոյն ժամանակէն աւելի հին պիտի լինի։ Այս գիւղը հին ու նոր դիրքը և անձուկ սահմանները ի նկատի ունելով, դիւրաւ կհասկացուի՝ որ թէև հին, բայց ոչ երբէք բազմաբնակ գիւղ եղած է. Ղազար Ջահկեցւոյ պատմելովն ինչպէս շրջակայ շատ գիւղօրայքն, նոյնպէս և Ապարակունիս չորեքտասաներրորդ դարու սկզբներէն խմբուել է և բաժանուել հայրենի եկեղեցւոյ ծոցէն Քանիւք Ունի-թօռաց. վերջին ժամանակները, երբ այդ Լատինահայ խումբը կքակտուի, կհալածուին ու կփչանան, թողլով միայն անագորոյն անխիղճ արարմանց սարսեցուցիչ յիշատակները, նոցուն քարոզութեան որդիքը—պապական եկեղեցւոյ զաւակ գըրուած քանի մի գիւղօրէից բնակիչները վերջին թշուառութեան մէջ կընկնին, ըստ որում համարիւն եղբարքը կգարշէին, և Պարսիկներն իբրև անտէրունջ ժողովուրդ մանաւանդ իբրև նոր դենի յենուած խորշելի խումբ՝ ամեն հնարաւոր

չարչարանքը, նեղութիւնները, և վշտերը անխնայ կհասցնէին. այս ամեն միջոցները կպատրաստեն Հայաստանեայց անարատ եկեղեցւոյ որկէն զատուած, և օտարացած 15—20ի չափ գիւղօրէից ողորմելի ժողովրդեանն Պարսկական կրօնն ընդունելու իբրև միակ միջոց առօրեայ անդորրութեան և խաղաղութեան, և ահա այսպէսով բոլոր կիսալատին խեղճ հայերը կրօնի հետ միասին կկորցնեն և լեզուն և ազգութիւն յանդարձ տարագրութիւն. որով և քստմնելի հարուած և անբուժելի վէրք ազգի. միւս գիւղօրէից վերայ խօսելն առանձին առանձին տեղեաց Թողլով գանք Ապրակունիս։

Զահկեցին եր. 334 պապական գիւղօրէից Պարսկական դէն ընդունելն գրրելով կասէ. " Նմանապէս և յերկրին Նախիջևանայ Ախթարմայից գեղօրայքն բազումք դարձան ի կրօնս Պարսից, որպէս Յալիթաղ և Քռնայ,, ելն, իսկ Ապրակունիս, Շահրունիս, Խոշկաշէնի և

Եպարաններին համար կգրէ թէ «սոցա մեծ մասն», ո՞ւր է հապա այդ երկրօք Եպրակունիսի ի կրօնս Պարսից դարձած մեծագոյն մասն բնակչաց, և ո՞ւր պարզի գաւառի մնացած փոքրաթիւ մասն, այժմ ոչ առաջնոյն տեղն կերևի, ոչ վերջնոյն. առաջնոյ համար հաւանական է կարծել թէ տեղափոխուած լինին ուրիշ մահմետական գիւղեր. իսկ երկրորդի համար թէ և շատ անտագան, կրկին ընդունած լինին իւրեանց հայրենի եկեղեցին, և մնած նորա ծոցը. և այս սորա համար շատ անտագան տասցինք, որ ինչպէս կերևի՝ Եպրակունիսի այդ մնացած փոքրաթիւ Լատինահայոց դարձի վերայ հազիւ 180 տարի անցած լինի, դեռ մինչև ցայսօր գիւղիս մէջ գերդաստան մի կայ, որոյ տոհմի ազգանունը թէ և «Սահակեանց», բայց սովորաբար ամենքն ես «Ֆռանկենց տուն» կկոչեն: Ապատամեն ծերունի բնակիչք գեջըս՝ թէ այդ Ֆռանկենց տունը պատաւ մի կար՝ որ երբ եկեղեցւոյ մէջ երեք անգամ

կերկնէին ՙՙՍուրբ աստուած՝ որ խաչեցա-րըն,,՝ կզայրանար կասէն, և կպոռար. նոյն-պէս երբ ՙՙՀրաժարիմքը,, ասելով կդառ-նային եկեղեցւոյ մէջ դէպ յարևմուտս, կբարկանար սաստիկ և կանարգէր մօտը կացողներին. բայց այսօր, գիւղի ծերունի բնակիչներն մինչև ցայսօր իսկ կպատմեն թէ ՙՙՄերն գեղն ժամանակով Հայութիւ-նից պրանվելայ Փրանկութեան, յետոյ էլի Հայութեան,,: Այս գիւղն ունի եկեղե-ցի մի յանուն Ս. Գէորգայ. մինչև ցամ 1868 անշուք և խարխուլ շէնք մի էր, այ-ժըմ նոր ի նորոյ կնորոգուի հասարակ քարամբք և տանիքն թրծած աղիւսով՝ թաղակերտ, միայն ամբողջ և անարատ թողած են սեղանը՝ որ կամարակապ է շի-նուած. արդէն այս սեղանի վերայ կընշմա-րուի դեռ Լատինական ախորժի մնացորդ. եթէ սորա վերայ սրբազնագործող քա-հանայն գիտենար, թէ Լատինաձև շէն-քը, որոյ վերայ ինքն կացած է, քանի տխուր և արտասուելի անցից պատճառ

եղած է, կարծեմ որ ամեն մեր եկած ժամանակը դողար և սարսէր։ Եկեղեցւոյս հիմունքը քանդած ժամանակը դուրս ելան հարիւրաւոր խաչքարեր, որոց ոմանց վերայ կնշմարուին նաև հետք անարուեստ ձեռքի գրած արձանագրութեանց, անվերծանելիք. միայն մէկի վերայ նշմարուեցաւ "Թվին Ը Ճ,, բաց ասոր երեւեցաւ և փոքրիկ աշտանակի բարձրութեամբ մարդոյ հասակի օրինակ գիպսէ (գաճ) շինած արձան մի, որ մարմարէն ամենևին որոշել չէր լինի, և այս արձանի վերայ փորագրուած էր Տիրամօր պատկեր, Քրիստոս ի գիրկն։

Եկեղեցւոյ հարաւակողմն երեսուն քայլ հեռաւորութեամբ առապարի մի վերայ կայ փոքրիկ խրճթանման շէնք մի, որոյ չորս կողմի հասարակ որմունքն կան երկուարշին ուկէս բարձրութեամբ. երեք խաչքարինք կային անշուք յարկիս մէջ, որոց մէկի վերայ մաշուած ու անվերծանելի տառից նշաններ, խաչքարանց չորս կողմը

շրջուած բազմաթիւ խեցեղէն ճրագարաններ, առաջին որ այս Սուրբ Յովհաննէսն է (շատ զօրաւոր սրբատեղ), ի պատիւ որոյ ամէն կիւրակամուտ երեկոները բարեպաշտ կանայք ճրագ կվառեն. պատմեց մեզ գիւղացի ծերունւոյ մէկը՝ թէ մեր գիւղացիներէն մինն կամեցաւ նորոգել այն սուրբ Յովհաննէսն, բայց երազ եկաւ իրան թէ ձեռ մի՛ տար. այլ ոմն և պատմեց, որ երեխայի մէկին 1870 ամի Փետրուարի ամսին երազով յայտնել է՝ թէ իմ մօտի թըրթի ծառի տակը քանդեցէք, երեք աման փող կայ պահած, երկուսն հանողին լինի, իսկ մինն գործ դրուի իմ նորոգութեան համար. բայց դեռ ոչ ոք ձեռ տըւած էր թթենւոյն։ Ի հիւսիսոյ կողմանէ գիւղիս առուակի աջ թևի վերայ կայ բարձր առապար մի բլրակաձև, որոյ վերայ կանգնած են երեք մեծամեծ խաչքարինք, որոց համար ասացին լինել սահմանի որոշիչներ, ըստ որում այսպիսի խաչքարինք կան կասեն հաստատուած և քանի մի տե-

դեր, որոց մի քանիին այժմ հողով ծածկուած։ Օրէնշեալ կոչ քարանց մէկի վերայ կնշմարուէին կոպիտ գրերի հետք, սակայն բաց ի պարզ մնացած թուականէն որ է ՌՆՂԴ, այլքն առհասարակ անվերծանելի։ Այս առապարի վերայ և ստորոտները սփռած են գերեզմաններ այնքան հողի հետ հաւասարեալք, որ հազիւ կարծել կուան մարդոյ թէ այդ տեղերը խոր քնով ննջելու ընկողմանած են մարդիկ. այդ գերեզմանատունը շատ ընդարձակ եղած է և մեծատարած, բայց մեծագոյն մասն այժմ այգւով է բռնուած. գիւղացիք պատմեցին թէ «էս է Ֆրանկների գերեզմանատունը»։

Ապրակունիսի այժմու բնակիչք 45 տան չափ են, որոց ոմանք գաղթականք Սալմաստայ և ուրիշ տեղեաց, կպարապին երկրագործութեան և յաջողակ են. բայց շատ սակաւ է սոցա հողը. չորս կողմն մահմետականներ լինելով, հին ժամանակէ ի վեր շատ հարստահարած են այս գիւղի

բնակիչները, և սոցա արքունի հողերի մեծ մասն յափշտակած՝ Թէպէտև այսօրուան օրս Տէրութեան շնորհիւ ապահովուած են Թուրքերի բռնութիւններէն, բայց դարձեալ սարկական հոգին մէջներէն չէ վերացել. նոյն իսկ այն րոպէին Թուրքերի հետ աղաչանքով և ակնածութեամբ կըշարժեն երբ հարկ կայ իւրեանց օրէնքով որոշուած իրաւունքը պաշտպանել. այս կերպ ստրուկութիւնը երբէք տեղիք տուած չէ իրանց զէնք բանեցնել, որով և հետեւաբար մէջները եթէ զինավարժ և ձիավարժ մարդիկ չկան, իսկ աշխատութեան կողմէն բոլոր շրջակայ բնակիչներէն կըգերազանցեն. հողի սղութիւնը սոցա ուրիշ աշխատանք գտնել տուած է, ամառն քաջագօտի երիտասարդները իւրեանց արտորայքը փութով հնձելով կդիմեն Սիւնեաց այժմու «Սիսիան», ասացեալ երկիրը և հունձ անելով բաւական օգուտ կստանան. և այնտեղէն դառնելով Շարուր կմտանեն բրնձաքաղի. սոցա աշխա-

տութեանց միջոցներ են նաև մի վարձով. մարդ և ապրանք այս կողմն այն կողմն տանել բերել, ու միւս՝ Տփխիս երթալ և երկու երեք տարուան պանդխտութեամբ ընտանեաց ապրուստ ճարել. կգտնուին սոցա մէջ և քանի մի արհեստներ, որովք փոքր ի շատէ հաց կհայթայթեն զոր օրինակ քարտաշութիւն, դարբնութիւն, հիւսնութիւն, որմնադրութիւն, համետագործութիւն, ոստայնանկութիւն, ներկարարութիւն, սափրչութիւն, նուագածութիւն (զուռնաչութիւն), թմբկահարութիւն (դափաչութիւն), բայց ամենէն շահաւէտն քարտաշութիւնն, այգեգործութիւնն ծագկած է գաղթականների ձեռքով. այգիներ շատացած են վերջին ժամանակներս, բայց դաշտի երեսն սփռուած հնձաններն ի նկատի ունելով, պէտք է կարծել որ հին ժամանակները կրկնապատիկ են եղած ու մշակուած: Մաքուր բարոյականութիւն կթագաւորէ գիւղիս բընակչաց մէջ. ջերմեռանդ սրտերի մէջ դեռ

որմաս արձակած չէ սահմանութիւնք և ծուլութիւնք․ երկիւղած են և պատկառ նախնեաւանդ օրինաց սովորութեան, Հաւատարիմ և սրտացաւ սուրբ Կարապետի վանքին և ամեն ժամանակ զանազան միջոցներով իւրեանց ծառայութիւնք ցոյց կտան։

Թոնա կամ Թոնէ.

Արնջակ գետոյ աջոյ եզեր վերայ ի ստորոտս Խլանատաղւոյ կանեկանի այս գիւղըն, երբեմն բազմամարդ Հայաբնակ և նշանաւոր աւան. Թունա մնած է չորեքտասաներրորդ դարու սկզբան անցից պատմութեան մէջ ազգաւէր ունիթոռաց պատճառաւ. սակայն հաւանական է կարծել որ իւր սկզբնաւորութիւնը եթէ ոչ շատ հին ժամանակաց մէջ՝ գոնէ երեք կամ չորս դար յառաջ պիտի առած լինի. ըստ որում պատմութեան մէջ առաջին անգամ յիշուած ժամանակը կերևի մեծ միաբանութեամբ հռչակաւոր մենաստանն ունեցող և նշանաւոր աւան մը. այս ա-

տանն ազգին տուաւ և կաթողիկոս մի, Տէր Մխիթար կամ մականուամբ Մխիկ, որ յամի 1341 նստաւ յետ անկման Յակոբայ Սսեցւոյ։ Այս տեղէն ծագեց և ճանտըն Յովհան ցիցն ազգի, որ այնքան սարփափելի և ահռելի հարուածոց և դառնագէտ մնասուց ազգի և եկեղեցւոյ պատճառ եղև իւր " միարար ,, (ունիթօռ) խմբովն. մենաստանն որոյ մէջ սրջացած էր Յովհան, և որ նորա ազգակործան խմբի արարմանց և խորհրդոց պատսպարանն էր, ցարդ ևս կայ նոյն տանի մէջ փոքրիկ առապարի վերայ քարոզ քստմնելի չարութեանց և անօրէնութեանց նոցին։ Մ՛հ սիրելի ընթերցող, դեռ թողած այս մենաստանը, յառաջ բերենք այն անլուր և մոլեռանդութեան հրով բորբոքուած կուրատարեր անցից համառօտ նկարագրութիւն, որ հազարաւոր մնասներ ազգին և եկեղեցւոյն հասուցանելէն, աշխարհի ներքին խաղաղութիւնը խանգարելէն, հազարաւոր պարզամիտն՚ք գայթակղելէն, անմեղ տառապեալ

ժողովրդի մէջ սուր, հեռ, և անմիութիւն ցանելէն, մինչև անգամ և արիւն թափելէն յետոյ, նաև այս անողորմութեան կորուստը և հարուածք տուաւ, որ տասն և հինգ գիւղեր որոշելով՝ Հռովմայ ուղղափառ դաւանին երկրպագուներ, ժամանակէ մի յետոյ անպաշտպան թողլով՝ անագորոյն Պարսկի ձեռքը, որը կատարել տուաւ իբրև անծանօթ կրօնի ծառայողներ և որը ստիպեց սա Հայկի մահմէտականութեան դիմելու, որով այսօրուան օրս՝ Հայ մի արտասուօք և տխուր զգացմամբ պիտի նշմարէ՝ Հայ արիւնը դեռ կրող գծագրութիւնը հայութեան անուանէն որոշած ժողովրդականաց վերայ (*)։

---

(*) Եւ յիշատակի արժանաւոր բան է որ՝ ինչ մարդ ալ լինի այս գիւղերին մնացողն, ինչպէս են Քոնա, Բանանեար, Սալթաղ և այլն, բնաւ չի նշմարեր Տաճկական կամ Պարսկական գծագրութիւն, այլ ընդհակառակն դեռ անփոփոխ և անայլայլակ մնացած Հայոցի կերպարանն, և տիպ դիմաց։

Սանեցի Յակոբ Կաթուղիկոսի օրով, այս ինքն խնկզեան ԺԴ. դարու մեծ անուն և համբաւ ունէր Նշեցի Եսայի վարդապետ «մեծ վարժապետ Հայոց», կոչեցեալն, և ինչպէս կգրէ Չամչեանն, «սորա եղեն բազում աշակերտք, զոր ամենք թուեն երեք հարիւր վաթսուն երեք», (Համ. Բ. Գիրք Ե. գլ. Խ). սորա աշակերտներէն էր և Յովհան Որոտնեցի «որ և կարգեցաւ առաջնորդ վանից յիւրում աւանի»։ Այս միջոցներն Յովհաննէս պապի հրամանաւ կգայ Պարսկաստան Բարդուղիմէոս լատին Եպիսկոպոս, ի կորդէ քարոզողաց, և Մարաղայ քաղաքի կողմերն վանք շինելով իւր համար, կսկսի քարոզել պապականնութիւն, և կգտնէ շատ աշակերտներ։ Յովհան Որոտնեցի սորա համբաւը լսելով կերթայ մօտը, և մտերմանալով հետը, տարիուկէս ժամանակի աշակերտութեամբ կսովորէ ինչպէս լատին լեզուն, նոյնպէս և նորա չարարուեստ թակարդներն ու կեղծաւպատիր հնարքներն. Չամչեան Գ. Մէ-

քայելն, որ միշտ կաշխատէ ամեն բան Հը-ռովմայ Վատիկանի քմացն և ախորժին հա-մեմատել, կ'գրէ՝ իբր թէ մեծն Եսային ին-քըն ''լուեալ զբարի համբաւ նորա՝ յղեաց պատուէր առ Յովհան Որոտնեցի գնալ և տեսանել զնա, թէ որպիսի իցէ վարդա-պետութիւն նորա,, (նոյն հատոր. ի գիր և ի գլուխ). Իսկ Ղազար Ջահկեցի կգրէ, ''Այս մոլորական հոգին այն . . . . թող-եալ զվարժապետն իւր և զուսումնակից եղբարս ուղղափառս, գնացեալ ի Մարա-ղայ և գտանէ մոլորեցուցիչ ոմն Բարթու-ղիմէոս անուն,, (տես ի գիրս Ջահկեցւոյն եր. 326)։ Այդ միջոցին ահա յղացաւ Նա-խիջեւանի բազմաթիւ գիւղորէից պարզա-միտ բնակչաց ապագայ դառն ճակատագի-րըն, և Ազգի և Եկեղեցւոյ նիւթական և բարոյական հարուածըն, որք և ծնունդ ա-ռին երբ Յովհան յիշատակեալ և Բար-թուղիմէոս մուտ գործելով Քռնայի վան-քը՝ ժողովեցին ոչ սակաւ աշակերտներ և համախոհներ, և սկսան քարոզել հայր

Մ՚իջայէլի խոստովանած ուղղափառու-
թիւնն. և այս առաքելական մեծ պաշտօնը
յառաջ տանելու համար՝ սկսան ցրուել
տարածուել ազգի մէջ, ջանալ բառնալ հա-
յաստանեայց Եկեղեցւոյ դաւանութիւնը,
և ծէսերը, իբրև մոլորութիւն և հերձուա-
ծողութիւն, իսկ նորա տեղը պաշտել
պապականութիւն. և այս նպատակաւ
շուտով ձեռք առին թարգմանել նաև
քանի մի գրեանք, ինչպէս Առաքինու-
թեանցն, Մոլութեանցն, Ալվերաքինն,
եւն. ու նոցա վերայ դատախօսել իւրեանց
աշակերտաց. և երբոր ազգի քաղաքական
հանգամանաց և առհասարակ նիւթական
ու բարոյական դառն վիճակի պատճառաւ
սկսած գործոցն բաւական յաջողելն տե-
սան, Յովհան Քռնեցի անձապարեց Հ-
ռովմ երթալով ու ծառայութիւններն
պապին ցոյց տալով, Դոմինիկեան միա-
բանող կամ միարար կարգի անուամբը կըն-
քել տալ և իւրեանց խումբը. այնուհետև
ամէն ճիգն և հնար թափեցին վանքեր և

եկեղեցիներ կանգնել ի Նախիջևան, Երնջակ, Տփխիս, Խորիմ, Մարաղա և Սուլթանիէ, որոց շատից աւերակներն կան և մնան դեռ յիշատակ անցելոյն. այս ամէնը չէր ինչ որ բարեխիղճ ընկերութիւնը կամեցած էր, նա դեռ ուրիշ նպատակ ունէր և շուտով ալ ձեռն արկեց, վերցնել ջնջել ոչ միայն Հայաստանեայց եկեղեցւոյ դաւանութիւնն և ծէսերն, այլ և Հայ լեզուն և նորա տեղ գործածել տալ պատարագի և այլ ժամերգութեանց ժամանակ լատինականն, որպէս զի Հայ անունը միանգամայն մոռցնել տային. որով և իւրեանց ջերմեռանդ գործունէութիւնն ակնյայտնի փայլէր Հռովմայ գահի առաջ, որ կախորժէր լսել ուրախութեամբ նոցա ձեռնարկութեանց Հեռաւոր ազգի մէջ յարուցած երկպառակութիւններն: Սոցա արածներն և քարոզածներն վերայ փոքր ի շատէ պարզ տեղեկութիւն մի ընթերցողին տալու համար, յառաջ կբերեմ Հ. Միքայէլի Չամչեան խօսքերը. “Յարեան

յայնժամ՝ երկու՛ ոմանք իբր նախանձաւորք արքանեակք չարի, որոց մին կոչիւր Ներսէս Պաղոն Եպիսկոպոս Ուրմեայ, և միւսն Սիմէոն պէկ՝ Եպիսկոպոս Կարնոյ, որք միաբանեալ ընդ իւրեանս զայրս քանի մի՝ շրջէին հանդերձ նոքօք այսր և անդր, և քարոզէին թէ հարկ է կրկին մկրտել և դրոշմել զամենայն հայս լատինական ծիսիւք, վերստին ձեռնադրել զքահանայս նոցա, և տալ պատարագել լատին բարբառով և արարողութեամբք, նոյնպէս փոխել և զամենայն կարգ պաշտօնաց և այլոց սովորութեանց, զի այսու կարասցեն միաբանել ընդ եկեղեցւոյն Հռովմայ, և ասէին ըստ գրելոյ Մխիթարայ Կաթուղիկոսի թէ ''մկրտութիւնն Հայոց է երկբայելի, և պատարագն Հայոց ոչ է ճշմարիտ պատարագ,,, ուստի որպէս ասէ նա ինքն Մխիթար Կաթուղիկոս ''յանդգնեցան ի ծածուկ և յայտնի մոլորութիւն մուծանել յեկեղեցի. զի ինքեանք կրկին ձեռնադրեալք և կրկին մկրտեալք՝ նա և զայլս բա-

զոմանս ձգեցին առ ինքեանս և կրկին մկրտեցին և կրկին ձեռնադրեցին. զի զոմանս ի բաղանիս, զայլս ի տունս, և զայլս յանցըս ջրոց կրկին մկրտէին, և ի ծածուկ տեղիս և ի վայրս անտառաց կրկին ձեռնադրէին։ Նոյն պատճառ զայս այսպէս առնելոյ ասէին նախ՝ թէ յորժամ զառաջինն մկրտեցայք՝ ոչ ճանաչէիք, ուստի և չէք գիտակ՝ թէ արդեօք քահանայն ասացեալ իցէ ,,Ես մկրտեմ զքեզ յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ,,. և զուցէ չիցէ ասացեալ վասն արբեցութեան. վասն որոյ հարկ է ձեզ կրկին մկրտիլ. . . ։ Երկրորդ զի զմեղսն զոր գործեցիք, զուցէ ապաշխարութեամբ չկարացիք ջնջել, այժմ մկրտութեամբ քաւեալ սրբեսջիք, և առանց պատժոց քաւարանի կարասջիք անցանել յարքայութիւն երկնից,, ։

Այս երկպառակութեան հուրն օր քան զօր բորբոքելով ազգի դառնաղէտ վիճակի մէջ յաւել և նոր անտանելի ցաւ. մէկ կողմէն արիւնարբու թշնամեաց յարձակ-

քող Չ երկիրը որսացուէր՝ թէ որ չլինէին Հոգատարքը։ Պատրաւոր ժամանակ պահելով ունիթոռք իւրեանց կենդանութիւնն և զօրութիւնն վերջապէս քարձան ի միջոյ. բայց ի՞նչ. եղեն այնքան քաղմաթիւ ժողովուրդը, որք արդէն մկրտուած ու կնքուած էին յանուն Լատին. — Նոցա սակաւագոյն մասն մի դարձան վերստին իւրեանց Հայրենի եկեղեցւոյ ծոցը, ''իսկ անդարձքն (ըստ Չամչեանի) յետոյ ի սուրն տաճկաց անկեալք ամենեքեան կոտորեալ փչացան, որպէս ի Սուլթանիա քաղաքն Պարսկաստանայ. կային անդ ԽԱ եկեղեցիք Հայոց, իսկ յորժամ անկան ի յախթարմայութիւն և մնացան զուխան սատուածեղէն, ապա յայնմ հետէ ոմանք ի սուր սուսերի մաշեցան, և ոմանք ի կրօնս Պարսից դարձան, և մի ի նոցանէ ոչ մնաց ի կրօնս ախթարմայութեան . . . ։ Նմանապէս և յերկրին Նախջուանայ ախթարմայից գեղօրայքն քազումք դարձան ի կրօնըս Պարսից, որպէս Սալիթաղ և Փռնայ,

որ զՆաւաքինութեանց և զՄոլութեանց և զՆախերգան անդ թարգմանեցին, և Կէծուկ, սոքա ամենայն։ Իսկ Նապրակունիս և Շահբունիս և Խոշկաշէն և Նապարաներ, որ է Նպիսկոպոսարան իւրեանց, սոցա մեծ մասն, ... (տես Դրախտ ցանկ. եր. 333-334)։ Թողեմ արդ սիրելի՛ ընթերցող, որ հառաչմամբ սրտի կնքելով այս աղէտալի պատմութիւնը, դառնամք ի կարգ մեր բանից։

Մէնաստան Վռանոյէ.

Տխուր անցքից յիշատակները ապագայից սրտից մէջ զարթեցնում է հնութեան նշխար այս մենաստան կիսաւեր. Տաճարի շէնքն քառանկիւնի, ներքին լայնութիւնն և երկայնութիւնն ութն քայլ. ամբողջ որմունքը, սիւնքն և կաթուղիկէն աղիւսակերտ. կաթուղիկէ տաճարին, որ հաստատուած է եղել երկու արևմտեան սեանց և երկու արևելեան կիսասեանց վերայ՝ կործանուած է. Թողլով միայն շրջապատ որմունքն՝ մէջ եկեղեցւոյն զարդարուած է ազգի ազգի քարաքանդակ

և աղիւսակալ խորշերով կամ պատուհաններով. ունի երեք սեղան, մինն մեծ, որոց վեմքարինքն կից յորմն արևելեան, ունի հինգ դուռն, երեքն արևմտեան, միջինն տւապ դուռն բարձր և լայն. Եկեղեցւոյ մէջ ահեղ կանգնած կայ կոփածոյ միապաղաղ քարէ սիւնաձև աւազան. Նոյնպիսի սիւն մի ևս արևմտեան դրան հանդէպ արտաքոյ։ Տաճարի մէջ կան երկու գերեզմանք, արևմտեան մեծ դրան կից։ գերեզմանաքարերի վրայ թէև ամենևին գիր չէ նշմարուի, բայց ես հաւանած եմ կարծել թէ սոցա մինն Բարդուղիմէոս եպիսկոպոսին պիտի լինի, միւսն ուրիշ մեկին, որք ի նշան յարգանաց և երախտագիտութեան այս տեղ ամփոփուած կլինին. Հարաւային կողմէն տաճարին կցուած է եկեղ թաղակապ և աղիւսակերտ փառաւոր շէնք, որոց տանիքն հաստատուած են տաճարի որմոյ և կամարակապ սեանց վերայ. այս շինութեան երկարութիւնն դեռ փոքր ինչ աւելի է քան տաճարինն, իսկ

լայնութիւնն երկու քայլ. գուցէ սա լինի նոցա դպրոցը, ըստ որում բաց այս, միւս չինուածոց մէջ չէ կարելի դպրոցի յարմարութիւն նկատել. իսկ եկեղեցւոյ արեւմտեան և հիւսիսային կողմերէն են պէսպէս կրօնաւորական մեծ և փոքր խցերի աւերակներ. և անհնար է չկարծել թէ այդ խցերի մէջ պիտի լինի գաղտնի դարան, ինչպէս տեղական բնակչաց կարծիքն. ևս ցոյց կտայ:

Այս վանքը յայտնի է կողմանցս բնակչաց մէջ " Կուսաբեր ,, անուամբ, " կուսաբեր գնացի ,,. " կուսաբերիցն եմ գալի,, կասեն սովորաբար, որ կուտայ պատմութեանը նշանակութիւն. Հ. Միքայէլ Չամչեան Առաքել պատմագրէն քաղելով սրբոց Հռիփսիմեանց մասանց լատին կրօնաւորաց ձեռքով յՖրընջակ բերելն, կասէ " Հասեալ յՖրընջակ գաւառ, յաւանն Սպարան կոչեան օթևանս առ Սենիթօս, և անդ յերկիս բաժանեալ զնշխարս սրբուհւոյն՝ զորս ունէին առ իւր-

նանս, զերկուսն եդին ի պահեստի յայլ և այլ տեղիս,, ևայլն (Հատ. Գ. գիրք Ջ. գլ. ԺԹ. եր. 570). Թէպէտ և յընթացս պատմութեանն ցոյց կտրուի որ այդ այլ և այլ տեղերն մինն Ապարաների իւր մէջն էր, և միւսն Բօլու սարի վերայ, սակայն անշուշտ և այս վանքիս մէջ պիտի պահուած լինի խիստ ծածկաբար, որուն անգիտակ են մնացել Թէ Ըլթուն-Աւետիք Աստապատցի, որ արքունի սպասաւորքը եկած Ապարաներ մասանց ամբողջ գտնելուն խնդիր էր, և Թէ անցիցս պատմիչ Առաքել Վ. Դաւրիժեցի, յորմէ և մնացած պիտի լինի անունըս " Կուսաքեր,, ։

Այս վանքն շատ ուխտաւորներ ունի, և անուանի է ընդհանրապէս Հայ և Թուրք բնակչաց մէջ իրեն սեպհականած հրաշքովը. կասեն որ որչափ խելագար մարդ, կամ կատաղած անասուն բերուի սորա դուռն, իսկոյն կբժշկուի. վասն որոյ և վանքիս մօտ կարելի է միշտ տեսնել

պզգպիտինները։ Պ. Ի. Շօպէն, որին վի-ճակուած էր աշխարհագիր տանել և ըն-տարագրել այս կողմերն ևս, յիշատակե-լով Քռնա գիւղ, կասէ, "Այս գիւղի մէջ կգտնուին աւերակք հռոմէական եկեղեցւոյ, որմունքն և սիւներն ամբողջ, իսկ կաթուղիկէն խոնարհեալ. եղած է այստեղ և մենաստան Պապական, որոյ հիմնարկութիւնն կհամարին հնագոյն Էջ-միածնէն "(տես Истор. памят. сост. Арм. области И. III. եր. 323)։

Տեղական աւանդութիւնն՝ զոր մէջ է բերել Պ. Շօպէն, այն միւս եկեղեցւոյ համար է, որ այս վանքի հարաւային ա-րեւմտակողմն կանկանի կէս վերստ հեռա-ւորութեամբ, դաշտին մէջ. փոքրիկ եկե-ղեցի մի եղած է այս, որոյ միայն այժմ որմունքն կերևին կէս կանգուն գետնէն վեր սրբատաշ կոփածոյ քարամբք և կը-րաղանդ. սորա համար ասացին ինձ Քռնե-ցիք, որ մեք կանուանեմք "Պառաւ Քէլիսաը", (իսկական կամ հին եկե-

կկայպէ. կայ և առուակ մի հանած, որ հեռու տեղէ ջուր է բերած ըմպիս համար անձրևաց նուաղութեան ժամանակը. ու զարծ է գրուած վանական պարտէզներն և պիտոյից համար։

## Գերեզմանք.

Ս_անուց հարաւային կողման պարսպի տակ կպարծրանայ փոքրիկ բլրակ մի, որոյ գլխին կայ գերեզման մի, որ մաշուած և կիսաբեկ տապանաքարովը կերևի լինել հին. սորա համար տեղացւոց հարցրած ժամանակս լսեցի որ իրանք որդւոց որդի կանուանեն "քէշիշ-գայըը" (գերեզման քահանայի), և պապենական սովորութիւն կայ մէջներս որ ջերմ կամ տենդ ունեցողներն կբերենք կասեն, գերեզմանիս վերայ կլուանանք, ձգելով քարի վըրայ սև փող, հաւկաւթ, և այլն, ու կողջանայ հիւանդըն բոլորովին. Նոյնպէս և այս վանքըն եկող հայ ուխտաւորներն առանց այս գերեզմանիս վերայ խունկ և

ման վաստակու չերթանք։ Այս գերեզմանն ես հաւանած եմ սակայն որ Յովհան Պանեգուլյն սխալի լինի, բայց որում ամենեքին դժուարին չէ կարծել որ նորա քրտամբքն եւ ջանիւք I. ատրինացած միաբանութիւն մի կամ ժողովուրդ կամելով աւելի մեծարել՝ այստեղ տաանձին թաղած են. տխմար ժողովուրդն եւ իւր փոքրիկ խմբի պարագլուխը մեծարելով խնկօք եւ մոմեղինօք սովորութիւն թողել է յետոյ, եւ այդ սովորութիւնը զօրանալով հետզ-հետէ, այսօրուան օրս Հայ-քրիստոնէից եւ Հայ-մահմետականաց կողմանցս անգիտութեանը եւ աւելորդապաշտութեանը անկանծելի սրբավայր մի ընդունել տուած է այն շիրիմն, ուր անմեղ հօտը պառակտող եւ գիշատող գազանի մի ոսկերքն կհանգչին։

Այն բլրոյ արեւելեան հիւսիսակողմն, փոքր մի անջատ կբարձրանայ միւս այլ բլրակ, եւ սորա վերայ կան երկու գերեզմանները. իրար շատ մօտ, որոց իւրաքանչ

բանից սրածայր լեռան Իլան-տաղը (օձա-լեռան)․ գրեթէ անմատչելի է սորա գագաթըն՝ որ և ունի շատ եղէններ։

Երեք անուն ունի այս լեռան, "Իլան-տաղը,, , "Իրան-տաղը,, և "Ինան-տաղը,,։

Իլան-տաղը՝ կնշանակէ օձի լեռան․ աւանդութիւն կողմանցս ցոյց կտայ որ հին ժամանակը շատ և բազմատեսակ օձեր կային սորա վերայ, իսկ այժմ մեծանուն ճանապարհորդն Հակստհաուզէն յիշատակելով այս լեռան՝ երկու ժողովրդական աւանդութիւն մէջ կբերէ, առաջինն իբր թէ օձ մի եթէ մինչև քան-հինգ ամաց հասանիլն մնաց անտես մարդկանէ, կառնու կերպարանափոխութեան զօրութիւն, ուզածի պէս ամեն կենդանւոյ կերպարանքով երևելու․ որոյ համար և երիտասարդի մի պատահած աղջկայ կերպարանք առնող օձի անցքը կգրէ․ երկրորդ թէ՝ Մեծն Իսկէնտէր (Աղէքսանդր) իւր կանայքը բնակեցոյց այս լերան

վերայ, և տեղւոյն թովկալ օձերը կղզու-շանկան նոցա պաշտպանութեանն։

Իրան-տաղը՝ լեռան Պարսկաստանի։

Ինան տաղը, կամ այսպէս ''Ինան գի տալ տըր,, աւանդութիւն երկրին կասէ որ՝ երբոր Նոյի տապանը ծփալով ջրոյ երեսին կգար անցնել դէպի Արարատ, հպեցաւ սորա գագաթին, վասն որոյ Նոյ ասաց, ''Հաւատա որ սա էլ լեռ է,,։

Բանանքար (Աղօրանէր).

Ա. Կարապետի վանքի հիւսիսային արեւելակողմն վերայ մի հեռաւորութեամբ կանգնած այս աւանն, երբեմն անուանի քաղաքն Հայոց։ Սորա բուն անունն է ''Աղորան,, կամ ''Աղօրաններ,, երբ որ շնորհիւ ունիթօռաց լատինացած Հայ բնակչաց տեղւոյս արտասանելի ձայնաւորին վձռեց նոցա համար մահմետականութիւն, հեռահետէ և անուանս ''Աղօրաններ,, փոխակերպելով, Թլպատեցաւ յայտնի կոչումն ''Բանանքար,,։ Հ. Մ'Հերայէլ

կարծեացը նայելով, այս քաղաքի բուն և ամենահին անունն պիտի լինի "Տիգրանակերտ,,. ըստ որում նոյն անուամն վերայ ծանօթութիւն կարգելով Հատ. Ը. եր. 196, կասէ. "բայց հայելով մատենագրաց ի պատմութիւնս Հայոց և այլոց ազգաց, մերթ է ասել թէ ոչ մի, այլ երկու էին Տիգրանակերտ քաղաք յայլ և այլ տեղիս շինեալ, մին ասի լինել Ամիդ քաղաք, այն է Տիարպէքիր յաշխարհին Աղձնեաց յառաջին Տիգրանայ կանգնեալ, և միւսն երկն ի լինել յաշխարհին Ուտենեաց, գուցէ թէ այն իցէ Նփարան քաղաք կամ Նփարանքը, շինեալ թերևս յերկրորդ Տիգրանայ, կամ թէ գուցէ սոյն այս Նփարան քաղաք իցէ շինեալ յառաջնոյն Տիգրանայ, իսկ Ամիդ ի յերկրորդէն,,։

Ըստ որոց այս անուան և, Նփարանքը քաղաքը իւր ամենահին, նշանաւոր և անուանի քաղաքը լինելու հաստատութիւնն ունի պատմութեան մէջ։ Ըրքէն վերջապէս 50 թուականին կզանենք Ը-

պարտանք հռչակաւոր, բազմամարդ և բազմ-
գաւառ քաղաքք մի, զոր Կորդուգան Հռովմայեցի սպարապետը իւր յաղթութիւններն յառաջ տանելով՝ կպառբառաւոր պաշարել անհուել, և կյաջողէ խորհրդոյն կատարումն յօժարական. Հրէնադաւանդութեամբ քաղաքացւոց։ Բաղաքին մէջ՚ն էր ամրացած և Տիգրան արքայ յամի 61. երբոր Պարսից Դարէհ-Աղոգեւ արքայի Մանէճ զօրավարը Պարսիկ և Լաորի զօրօք յանկարծ յարձակեցաւ քաղաքի վերայ և պաշարելով զայն՝ ,,քակաւ նեղել ի մարտ պատերազմի, և զօրք նորա մեքենայիւք և սանդղովք ջանային հուպ մատչիլ, այլ վտանգեալ ի քաղաքացւոց՝ ոչ կարէին վճարել ինչ,,, Զամ, պատմ. եր. 312։

Այս տեղ թերուեցան յԺԲ դարուն Լատին կրօնաւորաց ձեռքով մասունք սրբոց Հռիփսիմեանց, որոց մի մասն այս տեղ զաղղուածն էր, զոր գտաւ Աւետիք Ալթուն գանձակոծ անելով տեղացի

երկց մի։ Այս տեղէն էր Մխիթար Այպարանցի Ունիթեռւաց կարգէն, պատմիչ, որ իւր ամբողջ պատմութիւնն լցրել է մոլեռանդ կրիւք։

Այս տեղ էր և չարաճճունդ Ունիթոռաց եպիսկոպոսարանը ըստ պատմչոյ Գահկեցւոյն։

Այքան մեծաբնակ և անուանի հին-օրեայ քաղաք մի այսօրուան օրս հասարակ աննշան գիւղ մի է, բնակարան հարիւր քսան տուն Մահմետականաց։ Ապարանների երբեմնին մեծութեան, բազմամարդութեան և բարգաւաճանաց վկայք դեռ ցայսօր ժամանակի կհանդիսանան նախնի Հայ, և Հայ-Լատին բնակչաց հազարաւոր գերեզմանները գիւղի հիւսիսային և հարաւային կողմերը. որոց շատը դեռ Պարսկական մոլեռանդութեան պատճառաւ ջնջուած անհետացած, հազիւ նշմարելի պարսպաց հետքը, որք դէպի գիւղն տանող արևմտեան ճանապար-

Հի վրայ կատանութին երկարած *)։ Նմա-նապէս և քանի մի տեղեր, դաշտի երե-սը, մանաւանդ գիւղի հարաւակողմն տեսնուող այնքան հնձանների մնացորդ-քը, և այլն։

## Աչեղեցէ Աղորանէրէ.

Գիւղի մէջ փոքրիկ ապառաժաքար բլու-րակի մի վրայ կայ ցարդ կիսաւեր եկեղեցին, եպիսկոպոսարան Անիթօսաց. շէնք եկե-ղեցւոյն մինչև կամարները քարուկիր, իսկ կամարները և տանիքը թրծած աղիւսով. թաղակապ տաճարն բաժանուած է երեք մատուռի, որոց միջինն մեծ, և հաստա-տուած է եղել չորս սեան վերայ. երեք մա-տուռն ևս ունեցած են գմբէթներ. ա-ւագ սեղանն շրջապատող որմոյ վերայ յարևելից, ի հարաւոյ, և ի հիւսիսոյ կան քանի մի հատ խաչքարինք, որոց մի քանին խիստ ճարտարարուեստ քանդա-

(*) Գուցէ քաղաքի բերդի պարիսպն է սա.

երեց մի։ Այս տեղն էր Մխիթար Ապարանցի Ունիթօռաց կարգէն, պատմիչ, որ իւր ամբողջ պատմութիւնն լցրել է մոլեռանդ կրիւք ։

Այս տեղ էր և չարածնունդ Ունիթոռաց եպիսկոպոսարանը ըստ պատմելոյ Պ. Հակեցուոյն։

Այսքան մեծաբնակ և անուանի հինօրեայ քաղաք մի այսօրուան օրս հասարակ աննշան գիւղ մի է, բնակարան հարիւր քան տուն Մահմետականաց։ Ապարանների երբեմնին մեծութեան, բազմամարդութեան և բարգաւաճանաց վկայք դեռ ցայսօր ժամանակի կհանդիսանան նախնի Հայ, և Հայ-Լատին բնակչաց հազարաւոր գերեզմանները գիւղի հիւսիսային և հարաւային կողմերը. որոց շատը դեռ Պարսկական մոլեռանդութեան պատճառաւ քնջուած անհետացած, հազիւ նշմարելի պարապաց հետքը, որք դէպի գիւղն տանող արեւմտեան ճանապար-

հի վրայ կանոնութին երկարած *)։ Նմանապէս և քանի մի տեղեր, դաշտի երեսը, մանաւանդ գիւղի հարաւակողմն տեսնուող այնքան հնձանների մնացորդքը. և այլն։

## Աչեղեցի Աղօրաները.

Գիւղի մէջ փոքրիկ ապառաժաքար բլուրակի մի վրայ կայ ցարդ կիսաւեր եկեղեցին, եպիսկոպոսարան Սմիթօուայ. շէնք եկեղեցւոյն մինչև կամարները քարուկիր, իսկ կամարները և տանիքը թրծած աղիւսով. թաղակապ տաճարն բաժանուած է երեք մատուռի, որոց միջինն մեծ, և հաստատուած է եղել չորս սեան վերայ. երեք մատուռն ևս ունեցած են գմբէթներ. աւագ սեղանն շրջապատող որմոյ վերայ յարևելից, ի հարաւոյ, և ի հիւսիսոյ կան քանի մի հատ խաչքարինք, որոց մի քանիին խիստ ճարտարարուեստ քանդա-

(*) Գուցէ քաղաքի բերդի պարիսպն է սա։

կուած․ Հիւսիսակողման գեղաքանդակ խաչքարին մի վերայ խաչի վերին թեւի երեկու կողմն գրուած է «ԹՎ — ՉԲ»․ իսկ ի պատուանդանին «Քրիստոս Աստուած, յիշեա զուկկին …»․ միւսն եղծեալ․ միւս բոլոր խաչքարանց վերայ կային արձանագրութիւնք՝ բայց եղծեալք, իսկ աւագ սեղանոյ հարաւային եւ հիւսիսային կամարաց որմոց մէջ կային երկու գեղարուեստ խաչքարինք, առեն մէկն գետնէն կանգուն և կէս վեր․ Հարաւային խաչքարի վերայ գրուած էր «ԹՎ․ ՌՃԱ․ կանգնեցաւ խաչս ի բարեխօսութիւն Պատրոնանարին․ յիշեա Քրիստոս Աստուած եւ ողորմեա»․ Հիւսիսային խաչքարի վերայ կիսամաշ գրովք «կանգնեցաւ խաչս բարեխ . . . . . ԹՎ ՉԴ»․ Նոյնպէս հիւսիսային մատրան որմոյն մէջ կային երեք խաչքարինք, որոց երկուքն արձանագրած՝ բայց մնացին անվերծանելիք։ Այս եկեղեցւոյ ներքեւը եղած էր փոքրափոր գաղտնի դամբան, որ անյայտ էր միանգամայն

մինչև ցամն 1870, յորում պատահմամբ գիւղացի մօտաբնակ տաճկին մէկը արևելեան կողմէն տան ծածկի համար հող վեր առած ժամանակը դուռն գտնելով, հանած էր՝ ինչպէս նոյն գիւղացիք կհաւատացնէին, շատ զարդեր և անօթեղէններ, թէպէտ և ես ամեն ջանք գործ դրի որ կարողանամ ձեռագիր գրեանքը ձեռք բերել եթէ եղած են յիրաւի, բայց ի զուր անցաւ: Որովհետև այս եկեղեցւոյն արուած չէ այս կողմերս առանձին և սրբահական նշան հրաշից, ինչպէս սուրբ Կարապետի և Փանայի վանքերին, վասն որոյ տեղական Մահմետականաց մէջ առած է եղած սովորաբար ասել, "Հայոց սուրբ Կարապետը օձի կծածն ա լաւացնում, Փանու վանքը գժուածը, բան տու, Բանանեարի եկեղեցի ի՞նչ բանի ես պէտք գալի,,:

տակածաց մէջ և գուցէ ջանիւք խորամանկ շահասիրութեան ։

Բնակիչք գեղջս երբեք մասին չափ եկք են վերջին ժամանակաց, կպարապին երկրագործութեամբ, այգեգործութեամբ, և խաշնապահութեամբ. բաց ի վեց տանէ ամենքն աղքատ. ունին մզկիթ մի հասարակ չէնք՝ գիւղի մէջ տեղը, ուր կժողովին իբրև ի կեդրոն շրջակայ Մահմետականք արք և կանայք, Եւլոյ և նորա որդւոց մեհը փառաւորապէս տօնելու համար։ Թէ տեսնէիր դու, ընթերցող եղբայր, թէ այնտեղ, ուր երկար ժամանակ Լուսաւորչի չարչարանքը կտօնուէր, այժմ Եւլոյ, Հասանայ, և Հիւսէյնի նահատակութիւնը կտօնուի, կշիւարէիր յիրաւի անցեալի դժնէութեան վերայ։ 1869 Թուականի Մարտ ամսին մէջ այնտի կատարուէր այս հանդէսը, գնացի և ես տեսնելու. գիւղին մօտեցած ժամանակը տեսայ հարիւրաչափ պատանիներ և երիտասարդներ երկար ու ձիք շարուած ձեռ-

նապարհի մէջ, որի ձեռը դաշոյն, և որին բիր, կուրծքերը սպիտակ հանդերձ փաթթած և գլուխները պատատած սրով ու քարով, և արիւնով ներկած բոլոր կուրծքերը ու դէմքերը, հատաղի և վրէժխնդիր ձայնով կպօռային «Հասան, Հիւսէյին, Ալի, աղամ վայ», ևայլն. նոցա ձայնին իբր առաւել տխրութիւն և ազդուութիւն տալու համար կընթանային հետները թմբկահար մի և փողահար (դափի, զուռնաչի) և որոնք իբր ըստ սովորոյն մերթ կսկսէին ձայները հանել, և մերթ լռել. մտինք գիւղը, բերին ինձ օթոց նստելու մզկթի պատին տակ, որոյ առաջ՝ հրապարակին մէջ պիտի հանդէսը կատարուէր. հետզհետէ եկին ժողովեցան այն տեղ և շրջակայ սգաւոր գիւղացիք, բերելով իւրաքանչիւր գիւղի բազմութիւն իւր հետ պատգարակ մի զարդարուն չորս մարդոյ ուսերի վրայ բարձած, որոց մէջ բազմած էին Ալւոյ որդիքն և քոյրն, որոց համար էր ժամանակն

մաՀ և սուգ տեսնելու. Հանդէսն սկսաւ բորբոքուիլ երկար ժամանակ Հրապարակին մէջ բոլորաշրջան խմբով ու օդը լցնող աղաղակներով ամենքն ևս շապկաց օձիքները արձակած, որը դաշոյնով ճակատը կճեղքէր, որը բաց կուրծքը կկոծէր. իսկ այդ միջոցներին բերներէն լսուած բառերն էին "աման Ալի, աման աղամ, Հասան վայ, Հիւսէյին վայ", և այլն. վերջապէս պատրաստուեցան երթալ ընդարձակ դաշտ մի գիւղէն դուրս, ուր պիտի ներկայացուէր և պատերազմն. Հետներն միասին գնացի և ես, առաջին անգամ այնպիսի Հանդէս տեսնելու. մօլլայի մէկը Ալի ձևացած նստաւ ձի և շրջապատուած ծառաներէն եկաւ կանգնեցաւ բազմութեան մէջ, որի առաջն բերին ոչխար մի մատաղ անելու, բայց չընդունեց, ու սկսաւ նախ խրատել ու մխիթարել ժողովուրդն. ապա երբ տեսաւ Եզիդին սպառազինած, յայտնեց որ պիտի դուրս գայ թշնամւոյն դէմ. ժողովուրդն սկսաւ լալ,

բայց նա ակամայ մխիթարել ջանում և իւր ընտանիքին, թէ բնաւ չվախենաք. ես ունիմ օգնութիւն ի վերուստ, որով անշուշտ պիտի յաղթեմ թշնամւոյն. իսկ թէ կամք Տեառն վճռած լինի իմ մահը, այն ժամանակ միայն անհաւատն թողտուութեամբ երկնից կարող է ձեռն բարձրացնել իմ վերայ. բայց եթէ մեռնիմ ես, գիտացէք որ կերթամ ձեզ համար երկնքի մէջ տեղեր պատրաստելու։ Այս խօսքերն ասելով հուզեր բաժանուելու, միայն նորա Հասան որդին աղաչանքը նորան արգելեց եղաւ և ինքն գնաց. փոքրր ժամանակէ ետքը Հրացանի ձայնը լսուեցաւ, և ահա Հասանին սպանուած Երզնկէն գաւազանի մէջ դրած թէքին բազմութեան մէջ. լաց և սուգ պաշարեց զքոյրն, մայրն, և ժողովուրդն. բայց թշնամւոյ վրէժն առնելու համար պատրաստուեց երթալ միւս եղբայրն, Ախուէյլին. նոյն համբերեն կատարուեց և Ախուէյլինի վերայ, և աղքատին նորա դին

Հրեշտակին աներևոյթ կերպով բռնեց սուրն և զէնքն հալածեց այն անեղէն անօ-դարձ։ Ամենայն խռովութիւն Հանդի-սի մէջ կլինէր երգով. յաւուրս այս ա-մենայնի, մեծ ախոռանցն եւ բարձր աթոռի մի վերայ, և կայրգաց օրհնութիւն ամեն կարգի մարդկան, և ցրուեցան ամենե-քին։

Սալինաղ։

Սահմանակից Եպարքաների և անոր կէս վերսւո հեռի կանկանի այս գիւղ, որ ունի այժմ յիսուն տուն մահմետականն բնակիչ։ Այս գիւղն Եպարքաներ քաղա-քի մասն է եղած ի հնումն, և որովհետև շինուած է եղել ապառաժ և մեծաւա-րած սալաքարի վերայ, ուստի և առած է անունս «Սալիթաղ», որ այժմ Սալ-թաղ, այն է՝ սալի վերայ շինուած թաղ. սորա բնակիչքն ևս որսացած լինելով ու-նիթօռաց թակարդի մէջ, նոյն ճակատա-գրին են հանդիպել, որ ինչ միւս գեղեր։

Այժմու բնակիչք աղքատ են և կոպտարա-ային երկրագործութեամբ, և խաշնարա-ծութեամբ. այգեգործութիւնն նոր սկսած է մշեները, բայց չէ ծաղկած. Եկեղեցի գեղջս՝ որ եղած է հնումն, աւերեալ գոլով, ցոյց կուտայ միայն հիմանց մնա-ցորդքը։ Գիւղի հիւսիսակողմն, ճանապար-հի վերայ է հին գերեզմանատունն ան-բաղդ Հայոց, լցուած բազմաթիւ խաչ-քարերով, որոց շատը գիւղի բնակչաց ձեռօք քանդուած անհետացած են նոր բացուած առուակի պատճառաւ։

## Բոլուսար.

Ալթաղի հիւսիսակողմն և գրեթէ գիւղի կողքին կանկանի այս "Բոլու-սար,, անցեալ բլուրը կամ լեռնակը, որ երկ-ձիւգ. գագաթովը բաւական նմանութիւն ունի Մասիսին. Այս տեղ էր գաղած մասն ինչ նշխարաց սրբոց Հռիփսիմեանց, զոր հանել տուաւ Ալթուն Աստապատ-ցի. բայց մասանց տեղն կանգնած կայ և

նոյ յաջմէ և յահեկէ, աւանդատանց վերայ շինուած. ունի երկու դուռն, մի արևմտեան՝ փառաւոր՝ հօյակապ և գեղաքանդակ. սորա ճակատին հաստատուած է ամբողջ քար մի, որոյ վերայ նուրբ քանդակեալ երեք խաչ քարեր. Ներքոյ խաչքարին գրուած է. "Յիշատակ է դուռս մահտեսի Եթանիսի որդի Պազարին". յաջմէ նորին՝ "Յիշատակ է խաչս մահտեսի Գրիգորին և որդւոյն Մանուկին". և յահեկէ՝ "Յիշատակ է խաչս Հայրապետի որդի Միքայէլին". դրան աջակողման սեան ճակատին՝ "Յիշատակ է սիւնս մահտեսի Եզարեայ և ծնողացն մահտեսի Աղիայի և Խէրխաթունին". Առաջև Եկեղեցւոյս չորս փառաւոր կամարակապ սեանց վերայ հաստատուած է գաւիթ շքեղ, իւրաքանչիւր սեան արտաքին ճակատին քանդակեալ մի մի պատկեր չորից Աւետարանչաց և գրուած նոցա անունները, իսկ հիւսիսային սեան ճակատի վերայ գրուած է "Յիշատակ է խաչս Ուհանին կողակցի

Նազըլուլին,,. իսկ Հարաւայնոյ վերայ ''Յի-
շատակ է սուրբ պատկերս Մարկոսի որդի
Ովանէս վարդապետին,,: Գաւթի տանի-
քէն բարձր Տաճարի արեւմտեան պատի
ճակատին լուսամուտէն վեր, ''Յիշատակ է
սուրբ խաչս Էյվազի որդի Հարօնին Թ.
ՌՃ՛Է ին,,:

Հարաւային դրան ճակատի սալքարի
վերայ, ''Հիմնադրեցաւ սուրբ եկեղեցիս ի
Թվ. Հայոց ՌԽԸ ին,,. սակայն ինձ իս-
պառ անհաւանելի է՝ որ այսքան վսեմ և
մեծածախ փառաւոր յարկ մի մօտ ժա-
մանակի գործ լինի. գուցէ արձանագիրն
վերջին ժամանակաց գործ լինելով՝ անգի-
տութեամբ այն թուականին տուած է շի-
նութիւնն. մի և նոյն արձանագրին իբր
շարունակութիւն՝ յետոյ ժամանակաւ դր-
բուած է, ''Ես Նորաշէնցի Մարկոս Ը-
փուտողս իմ յօժար կամաւս փ. խալվար
Նախջևանի վախիմ արիմ Ըստուածա-
ծին Եկեղեցւոյն ի Թվ. ՌՃ՛ԺԻ ին,,.
գաւթի արեւմտակողմն եղած են բաւական

եկեղեցական սննդականներ, այժմ հասարա-րուած և բնակութիւն ձգած է քահանայի համար: Եկեղեցւոյ արեւելակողմն է աղբիւրն նորին, որոյ երկու թաղակապ հոյաշէն աւազաններ ի մէջ վազէր է հա-մեղ ջուր, խողովակներով հեռուէն բե-րած, իսկ այժմ միանգամայն ցամքած և խցեալ:

## Սուրբ Յովհաննէս.

Այժմու ծառաստանեայց մէջ ընկած փոքրիկ վայելչաձև եկեղեցի մի եղած է, այժմ աւերակ. Մնան միայն սեղանն և տա-նեաց կէսն. սեղանոյ չորս կողմով պատին մէջ թողած կան եօթն պատուհաններ, և ամեն մէկի մէջ մի մի խաչքար. Նայե-լով խաչքարներու քանդակներին, բաւա-կան նուրբ են, իսկ արձանագրութիւններն շատ խակ ձեռքին գործ: Արեւելեան հիւսի-սակողման խաչքարի մի վերայ տեսած ար-ձանագրի թուականն միայն յանձն առինք օրինակել, որ է «ի Թ. Ջ.Ճ.Գ.», յորում

նութիւնն, յափշտակութիւնն որ քան զօր կսաստկանայ. Շահաբաս արքայ ճարահատեալ զօրք կուղարկէ որ ըմբռնեն զինքն. բազմաթիւ աղքունի հրոսակը մինչև Տողկեաց (Միսեանի) լեռները փախցնելով վերջապէս կբռնեն Գանտիլը ու կըբերեն. Շահաբաս կհրամայէ կանգնեցնել, և ամեն մի զօրականի՝ իւր ձիոյ տոպրակով հող բերել լցնել նորա գլխին. որով կձևանայ այս փոքրիկ բլրակը "Գանտի— Մազրայ":

## Խոշկաշէն.

Խլանտաղուց հիւսիսային արևելեան ստորոտի վերայ ձգուած է այս գիւղ, երբեմն Հայաբնակ. այս գիւղն ևս ընդունեց ունիթոռաց քարոզութիւնն. այժմու բնակիչք գեղջ՝ քառասուն տան չափ մահմետականք են, բայց չէ յայտ թէ հին Հայերն են լատինացած, թէ յետոյ այլ և այլ տեղերէ ժողովուածներ. եկեղեցի գեղջս, որը հնութեան երեսէն, և որը մահ-

մեռական մոլեռանդութեամբ այժմ միան-
գամայն գետնի հետ հաւասարուած ու ե-
ղած է գեղացւոյ մէկի պարտեզատեղ. Հի-
մունքն միայն մեան նշմարելիք. այս գիւղիս
մէջ կրղեալ աղբիւր մի բարեհամ է բաւա-
կանութիւն բնակչացն ։

### Երզնջահաւաքերք.

Երզնջակ գետոյ ձախ թևի վերայ, և Նորաշէն գիւղէն երկու վերստ հեռի կը բարձրանայ միապաղաղ սեաւն նման ուղղակի վէր։ Հ. Մ. Չամչեան կոչէ այս լեռան ընդ մէջ Երզնջակ և Գողթն գաւառաց, բայց միանգամայն սխալ, ըստ որում բուն համանուն գաւառի մէջն է, և Գողթն գաւառէն բաւական հեռի։ Այս ամբողջիս գլխովն անցած զառնաղէտ և քըստմնելի անցից յիշատակը մարդ կզարհուրեցնէ։ Այս ինքն վաղ ժամանակէ հետէ ապաստանարան պիտի եղած լինի մեր ազգայնոց, թէ և պատմութեան մէջ տա-

նութիւնն, յափշտակութիւնն օր քան զօր կաստկանայ. Շահաբաս արքայ ճարահատեալ զօրք կուղարկէ որ ըմբռնեն զինքն. բազմաթիւ արքունի հրոսակը մինչև Նոզկեաց (Սիսեանի) լեռները փախցնելով վերջապէս կբռնեն Պանտիլը ու կըբերեն. Շահաբաս կհրամայէ կանգնեցնել, և ամեն մի զօրականի՝ իւր ձիոյ տոպրակով հող բերել լցնել նորա գլխին. որով կձևանայ այս փոքրիկ բլուրը «Պանտի— Մազրայ»։

## Խոշկաշէն.

Խանտաղուց հիւսիսային արևելեան ստորոտի վերայ ձգուած է այս գիւղ, երբեմն Հայաբնակ. այս գիւղն ևս ընդունեց ունիթոռաց քարոզութիւնն. այժմու բնակիչք գեղջ՝ քառասուն տան չափ մահմետականք են, բայց չէ յայտ թէ հին Հայերն են լատինացած, թէ յետոյ այլ և այլ տեղերէ ժողովուածներ. եկեղեցի գեղջս, որը հնութեան երեսէն, և որը մահ-

Թուրքական մոլեռանդութեամբ այժմ միան-գամայն գետնի հետ հաւասարուած ու ե-ղած է գեղացւոյ մէկի պարտիզատեղ։ Հի-մունքն միայն կան նշմարելիք. այս գիւղիս մէջ կը բղխէ աղբիւր մի բարեհամ ի բաւա-կանութիւն բնակչացն ։

## Երնջակաբերդ.

Երնջակ գետոյ ձախ թևի վերայ, և Նորաշէն գիւղէն երկու վերստ հեռի կը բարձրանայ միապաղաղ սեան նման ուղ-ղակի վեր։ Հ. Մ. Չամչեան կդնէ այս լեառն ընդ մէջ Երնջակ և Գողթն գաւառաց, բայց միանգամայն սխալ, ըստ որում բուն համանուն գաւառի մէջն է, և Գողթն գաւառէն բաւական հեռի։ Այս ամ-րոցիս գլխովն անցած դառնաղէտ և քստ-մնելի անցից յիշատակը մարդ կզար-հուրեցնէ։ Սա ինքն վաղ ժամանակէ հե-տէ ապաստանարան պիտի եղած լինի մեր ազգայնոց, թէ և պատմութեան մէջ առա-

ջին անգամ նշանաւ որ կհանդիսանայ Յու-
սուփ բռնաւորի պաշարմամբը, և Սմբա-
տայ Խոստովանող Արքային՝ սորա սատորաք
կրած կտտամահ տանջանքը, յամի 914։
Այդ արիւնարբու անգութ բռնաւորն շար-
թայակապ կոչկանդած Հայոց թշուառ և
ողորմելի թագաւորը, և հեռու առած կղզի-
մէ այս բերդիս վերայ՝ "Ի մոր եդեալ
խլել և յատակել զամրոցն, և զբնակիչս
նորին վարել ի գերութիւն, մանաւանդ
զտիկնայս մեծամեծաց, յորս երևելի էին
մայրն Սմբատայ Սիւնակեանց, և կին Նո-
րա որ էր քոյր Գագկայ բռնաւորի, և կին
Սահակայ եղբօր նորին Սմբատայ, և այլ
ևս ազատ կանայք, թող զբազում որդիս
նախարարաց որք զօղեալ Պնայրին անդ,,
Չամ. պատմ. հատ. Բ. գիրք Գ. եր. 756։
բայց երբ որ կտեսնէ մարդախոշոշ բռնա-
ւորն, որ ամրոցն անձնատուր չի լինի, սը-
տին չարաթոյն դառնութեան մաղձը կը-
թափէ Սմբատ արքայի վերայ, կանգնեցը-
նել տալով զնա բերդի մէջ զանուածնե-

րի ուշքի առաջը, ու չարաչար գանահարութիւնէն և ազգի ազգի անլուր սոսկալի և անտանելի տանջանքներէն յետոյ, խեղդել հրամայելով հրապարակին մէջ. դահիճք հրամանն առած, Թաշկինակը բռնի վարոցներէն բերանը մղելէն, տասներկու մարդոց վրան ընկնելէն ու հոլովելէն յետոյ, չքստմնեցան ի բերելն "արտաքոյ բնութեան ի սարսափելի տանջանս. զի յերկարելով տակաւին շնչոյ նորա՝ մատուցին ի ծածուկ անդամս նորա կտտանս և չարչարանս անողորմս և քստմնելիս, անհնարինս և անասելիս։ Իսկ ապա մինչ չև էր իսպառ հատեալ շնչոյ նորա, խողխողեցին զնա, և հատին սրով զգլուխ նորա,, (ի Նոյն Պատմ.)։

Անօրէն ոստիկանն Սմբատայ կեանքը զրաւելէն յետոյ որչափ և բերդի պաշարումն ու պատերազմն կատարեցնէ, առումն անհնարին կլլնի, մինչև որ ամենահաս և արագահաս նենգութեան ու մատնութեան մեքենաները Թշնամին յանկարծ

Միրկաղէն ի ներքս լցնել կամին, յաւհարեկ շուարումն և ի սուգ անհնարին դառնութեան տարաբաղդ բնակչացն. որոց ահա-տընտիր արարեալ զմնացորդս մարդկան, զանպիտանսն և զոգեղէն սրոյ ետուն ճարակ, իսկ զառոյգսն և զգեղեցիկսն գերեցին։ Այնպէս և զկանայս մեծատանց հանդերձ մանկամբք նոցին,, (անդ. եր. 758)։ Ո՜վ ուղեւոր, ո՜վ եղբա՜յր, ո՜հ որչափ հաճած կլինէի բաղձանացս, թէ որ այս աշխատութիւնն տեղիք տուած լինէի քեզ գրելու, թէ այդ հողն՝ ուստի զոր այժմ դաշտը ծուռ դրած կիսխես կանգնես, քո անբաղդ թագաւորի, իշխանաց, և համաբիւն հազարաւոր եղբարց արիւնով ոռոգուած է, այդ լեառն՝ որի տակովն այդպէս երգով և դղրդալով կանգնիս, բիւրաւոր սրտաբեկ, անյոյս, և անօգնական ընտանեաց, տիկնայց, և իշխանաց մերթ ապաստանարան է եղած, մերթ տիրանենց մատնութեան և նախանձու ձեռօքով զոհարան, գոնէ, այդ տեղէն անցած միջոցդ,

վրէժխնդիր սիրտը թող անգամ մի շարժէ երակներիդ մէջի արիւնը, և եթէ դու օգնել չկարացիր, գոնէ կարեկցութեամբ ես պատուէ նոցա արտասուելի յիշատակը ։

Երկոտասաներորդ դարու մէջ կծաւանքէ այս ամրոցն քանի մի աւանօք համանուն գաւառի Կիլիկում Ռուպինեան, եղբայր Իւանայ. յետ նորա Ամբատ քաջազօր իշխանն Արենեաց։ Այս ամրոցիս ստորոտները տեսնուած պատնէշի և պարսպի նշմարելի հաստատապինդ հիմունքը, ժամանակի անկասկած ամրութիւնը կըհաւաստացնեն. և հարիւրաւոր գերեզմանները, որք ամրոցիս ստորոտը, դէպ ի Շահկերտ տանող ճանապարհի ձախ թևի վերայ կարկառի մի գլխին կանկանին, և որոց ամէն մէկը կպարունակէ իւր մէջ մինչև 40-50 մարմիններ, տեսնողին կարծել կտան այս տեղ թափած հազարաւոր մարդոց արիւնը և կոտորածը. ո՞վ կարող է երկուանալ թէ այս գետնափոր փոսերի մէջ կու-

տակուած դիակները այն զօրացն կլէնին, որք ժամանակաւ ամրոցիս դէմ մարտ դը- րած և ջարդուած, կամ երկարաձիգ պա- շարման միջոցն դիւրածախ ախտով մի բռնուած, առ տեղեաւն հողը մտած են։ Այս գերեզմանների հիւսիսակողմն. փոքր ինչ հեռի, բաւական ընդարձակ բլրակի մի վերայ կան դարձեալ պարսպի կամ պատնէշի աւերակներ, որոց համար Նորա- շինեցի ուղեցոյցն իմ ասաց որ "Երեդը փակողների օրտուատեղն ա՝ ինչպէս որ մե- կանում պապենական խօսք ա ասումեն,,։

Վերջին ժամանակներն այս տեղ ա- պաստանած էին և Պարսիկ զօրքը. յետ նորա և Ռուսաց սակաւաթիւ բանակը, մինչև որ բոլոր երկիրն իրանց ձեռքն ա- ռին։ Երեք անգամ է որ ես այս ամրոցի գլուխը բարձրացայ տաժանելի նեղու- թեամբ, և երեք անգամն ևս զարմանքս զսպել չկարացի, տեսնելով բարձր և ա- պառաժ լերան մի գլխին այնքան հոյակապ և բազմաթիւ արհեստահնար շէնքերը։

Երկու ճանապարհ կայ միայն բերդն ելանելու, մինն հարաւային և միւսն հիւսիսային. Հիւսիսային ճանապարհն յառաջ այնպէս պատրաստուած է եղել, որ մէկ ձիով կարելի է եղած գնալ. իսկ այժմ շինուածոց փլատակաց և լերան գլխէն թափած սալերաձիւն փակուած. այսու ամենայնիւ ոտքով գնացողին համար միւսէն դիւրին. այս ճանապարհով բարձրացած ժամանակը, կտեսնես երեք ամրային պարիսպներ քարուկիր շինութեամբ, առաջնապարիսպն ընդ կիսայն քանդուած է, միայն պահակներին տեղերն աւելի գիմացել են. միջնապարիսպըն առաջնոյն չափ մնասուած չէ. իսկ ներքնապարիսպն դեռ կանգուն մնացած ամուր և բարձր շէնք մի է. այս պարսպի քովեր կան սենեակներ, որք քարուկիր. և որք թրծած աղիւսով կանգնած շինութիւնք, մեծաւ մասամբ անմնասք, իսկ պարիսպն անցած ժամանակդ, կտեսնես հարիւրաւոր մեծ և փոքր սենեակներ, է որ քարուկրով, և է որ աղիւսով շինուած,

բոլորն ալ ամուր և ընտիր, որոց կապակաւոր միայն ծածկը. Լերան արեւմտեան Հարաւային ծայրի վերայ դեռ մինչև այսօր կայ և Թռայ ամրողջ քարաշէն դիտարան մի։ Ոչ սակաւ ուշադրութեան արժանի են և նորա ջրամբարներն՝ որք թուով ինն հատ են, ամեն մէկը վեց քայլ լայնութեամբ՝ քսան չորս քայլ երկայնութեամբ և վեց կանգուն խորութեամբ։ Այս ջրամբարներն էին քարէ կառուցած, տաշուած և քառակուսի ձևով փոսացրած աւազաններ են, մանր մանր ճիւղերով փորուած առուակներովն բոլոր անձրևները և հալուած ձիւները կժողովուին անկորուստ։ Ամրոցի խիստ վտանգաւոր պաշարման ժամանակ նոցա ջրամբարները զօրացրել են պաշարելոց պատուքը. Նոյն իսկ ամառուան տօթ եղանակին ամեն մէկի մէջ կա ջուր գտնինք, բայց մեռած՝ ինչպէս են ստորաբար անշարժ ճահիճների ջրերը. Երէկ գործ ածած ժամանակը առողջ կամ ուրիշ հնարքով մաքրել ու կենդանացրել են։

Վերան գագաթը երկու ծիւղ բաժանուած է. այցելուն մի ծիւղի տարածութիւնը և վրայի շէնքերը դիտելէն յետոյ կպարտաւորի և միւս գագաթը ելանել ահ ու դողով, որ առաջինէն շատ բարձր է. այս ծիւղի վերայ գտնուած աղիւսակերտ և ըստ մեծի մասին կանգուն շէնքերը տեսնողը, առաջինի վերայ ունեցած զարմանքը կզգայ. դէպ ի հիւսիս և արեւմուտք մասին տուող լերան մերկ և միապաղաղ գագաթին վերայ կանգնած հոյակապ կամարները, ընդարձակ քառակուսի գահլիճը, և չորս կողմի վայելուչ ճարտարարուեստ շէնքերը արդէն ցոյց կուտան իշխանական արքունիք լինելը, որով և իրաւամբ մերձակայ բնակիչք ''Շահ—Խանատը,, կանուանեն: Ի՞նչ սքանչելի և գիւթիչ տեսարան կընծայեն այս տեղէն մի-ակի տուողին, Երնջակ գաւառը, Մակու-ար; Երասխը, Նախիջեւան քաղաքը, և Պարսկաստանի լեռները: Ճարաւային ճանապարհը չնայելով որ արդէն գծագրա-

կոխ և տաղժանեցուցիչ է, դարձեալ. երկք պճնազարդ ամբարձած է. սորա ներքնաբերդը, որ լերան գլխին է, այնպէս ամուր և անվթարանգ է, որ կարծես նոր շինուած է. յաջմէ և յահեկէ կան երկու ընտիր և գեղեցիկ սենեակներ նոյնպէս անմխանաք: Այս ճանապարհն կտանէ զմարդ դէպ ի Ներնջակ գետը, որ մօտ ոմն կանգնանի. վերջին ուաւեր պարսպէն դուրս ելած ժամանակը լերան ստորոտի վերայ բազմաթիւ շինութիւնների — տանց և պարսպաց մնացորդներ կտեսնէ մարդ, բոլորն ես քարաշէն. բայց դժուար է որոշել թէ ինչ նպատակի են ծառայած:

Խանադա.

Ներնջակարերդի այս Հարաւային ստորոտի վերայ այժմ կայ տաճկաբնակ գիւղ մի «Խան—ադա», անուն. որ կերևի հիմնեալ վերջին ժամանակներս. որովհետև բերդի այնքան անդադար պաշարմանց ժա-

մնանակ չէր կարող այս տեղ բնակութիւն լինել։ Բնակիչք գեղջս ծոյլ և աղքատ մահմետականք են 50 տան չափ. Նոր նոր սկսած են ծառատաններ և պարտէզներ մշակելու ձեռք տալ։

## Նըրնջան գաւառ.

Յիշատակեալ բերդի հարաւակողմն և անտափ իրր չորս վերստ. Հեռաւորութեամբ կան և Մեան գետ Հաղիւ Նշմարելի աւերակք քաղաքիս, որոյ անուանով և ամբողջ գաւառը կոչուած է. տարածութիւն քաղաքիս ձգուած է կէս մի հարթ լեռնադաշտակի, և կէս մի լեռների վերայ, բայց ափսոս, որ կոյր՝ ապէտ, և հնութեան յոյ գը չիմացող. Թուրք բնակիչք Խանադաղ գիւղի, վերջին ժամանակներս սակաւ առ սակաւ քանդելով աւերակներն ազարակներ դարձուցած են, այնպէս որ այժմ Հաղիւ կան և նշմարուին ցան և ցիր մնացորդք Հիմանց, ըստ նշանոյն քարուկիր և ըստ կը-

սոյն հողանիւթ շինութեանց։ Առաջեաւ քաղաքատեղւոյս՝ լեռնադաշտակի վերայ կանկանի գերեզմանատունն, որ այնքան բազմաթիւ հին գերեզմաններովը քաղաքին երբեմն բազմամարդութիւնն կը յայտնէ. հնութեան ժանիքն ծախել է գերեզմանաց բոլոր արձանագրութիւնները, պահելով միայն ի նշան քրիստոնէութեան մամռապատ խաչերը. այնքան երկար դեգերելով քարերի մէջ հազիւ միայն մէկի վերայ այս գրերս որոշել կարացի «Թվին ՈՒԽՐ»։ Որչափ շատ կերեւին հանգստարանիս գերեզմաններն, դեռ երկու բաժնի չափ հերկուած հողէ մէջ անյայտացած են, յիշատակեալ գիւղի մոլեռանդ բնակչաց չարամիտ ձախմանօք։ Այս քաղաքիս մէջ եղև ազգային ժողովն Հայոց, Բագարատ մեծ իշխանի, և Սմբատայ Բագրատունւոյ մեծ սպարապետի օրով յամի 841, Ովայեցի Յովհաննէս Կաթողիկոսի վերայ եղած ամբաստանութիւններն քըննելու համար։

# Ս. Գէորգ.

Նոր-Ջուղ քաղաքի հիւսիսակողմն, բարձր և դժուարամատչելի լերան մի գլխին կանկանի այս վանքը յանուն Ս. Գէորգայ. շինութիւնն հասարակ, քարուկիր. կանգուն կեցան միայն որմունքն. ունի սեղան մի, և դուռն երկուս. չունէր բնաւ արձանագիր. կից աւազ մատրանս ի հիւսիսոյ եղած է միւս եւս աղօթատեղի փոքրիկ, այժմ և նա աւեր բոլորովին բաց ի արևելեան որմոյ կէսն։

Եռաջ աւ մատրանն դէպ յարևմուտս, լերան զառիվայր կուրծքի վերայ կատարծուեր ընդարձակ գերեզմանատունն, որոյ շիրմաց դեռ շատը հերկուած հողի մէջ ծածկուած անյայտացած հերկող արօրի երեսէն. Մնացելոց մէջը կտեսնուին քանի մի փառաւոր մահարձաններ, այլ գրութիւններն եղծուած։ Մատրան քովերը գիւղի կողմ բնակութեանց հետք չգտնելով հար-

կաւ կկարծուի՛ որ և այս հանգստարանը Երնջակ քաղաքինն պիտի լինի դարձեալ, ուր ամփոփուած են շատերը առանձին կըտակով և բաղձանքով մի, այպա թէ ոչ փոքրիկ մատրան մի սակաւաթիւ ծառայողներովն չէք ձեւանայ բազմամարդ հանգստարան. արդիւնաւոր այրն, Յովհաննէս Եպիսկոպոս Շահխաթունեանց այս տաճարիս կամ մատրանս համար կկարծէ լինել առաջին մենաստան Ս. Կարապետի Երնջակու, զոր մեք չընդունեցինք վերևը: Ս. Գէորգայ մատրան հիւսիսակողմն հարիւր քսան քայլ հեռի, սրածայր ժայռին տակ փոքրիկ քարապատ խրճիթիկ մի կայ, որոյ մէջ գերեզման մի՛ վրայի քարը մէջ տեղէն բեկեալ, ունէր զանազան նկարներ և փորուածք. իսկ եզերքի մէկի վրայ այս գրերս ‘‘ՍՊ.Ի. Թ.,, զուցէ միւսքն եղծեալք. աւանդութիւն մերձակայ բնակչաց ‘‘Ճ՛րդնաւորի,, կկոչէ այս շիրիմս: Ինչպէս յիշատակեալ մատուռն Ս. Գէորգայ, նոյնպէս

և այս դամբարան ուխտատեղիք են մօտակայ Հայ գիւղօրէից։

## Պաղանճի (Բաղնէյր)։

Արնջակ գետի ձախակողմն բարձրաւանդակի մի վրայ տարածուած բաւական ընդարձակ գիւղ մի է. գեղեցիկ տեսարան կընծայեն այս գիւղին՝ զինքն շրջապատող լեռներն և բլուրներն, որոց մէջ կան՝ որ մերկ են, և կան՝ որ բուսաբեր, կան՝ որ մեծ, և կան՝ որ փոքր։ Պաղանչին շրջապատող լերանց մէջ նշանաւորներն են յարեւմտից Արնջակաբերդ, ի Հարաւոյ ''Պալլը—Պայա,, (Մեղրածոր վէմ), և կը կոչուի այս անունով նորա համար՝ որ անմատչելի գագաթին մեղուք բուն դրած են. ի Հիւսիսոյ՝ անտառիկ ամրոցն Պաղանչուոյ, որ շատ անգամ ապաստանարան է եղած ազգամէլի ժողովրդեան. Պարսիկ ասպատակողների երեսէն, և Հանդիսարան սխրագործութեան՝ կորովի բաղկաց խանդամի-

րեան Յովհաննէս իշխանի և արիասիրտ ընկերաց նորին, որոց համար Չամչեանն կգրէ ''էին արք զօրաւորք և հաստատագունք,,։ Այս աւանն ի հնումն շատ մեծ և բարգաւաճ եղած է, և շատ անգամ պատմութեան մէջ քաղաք կկոչուի։ Այժմու բնակիչք գիւղիս բոլորն ալ Հայք են հարիւր տան չափ, որոց կէսն բնիկ, և կէսըն գաղթական. բնիկ բնակչաց մէջ դրեթէ դեռ կփայլի նախնեաց անվեհեր և քաջակորով արիութիւնը, անուանի են ձիավարժութեան և զինակրութեան մէջ, և ակնածելի շրջակայ բնակչաց մօտ։

Այս գիւղի բուն անունն է Ռահկերտ, որ ցոյց կուտայ լինել Ռահի գործ կամ դաստակերտ, բայց հնութիւնն ցոյց տուած չէ սորա սկզբնաւորութիւնն. անունս ''Ռահկերտ,, տեղական աւանդութիւնն կմեկնէ ''Ռահ-գիրդ,, (Ռահեմուտ) ինչպէս պիտի տեսնեմք ստորև։ Այժմու սովորական կոչումն ''Պաղանչի,, առնուած է ի կիրառութիւն գրացի բնակչաց մէջ՝ գիւղիս նախ-

նիւթնակցաց արհեստէն, այս ինքն պղնձագոր-ծութենէն, որ ժամանակին գլխաւոր և կիրթ պարապմունքն էր Ռահկերացւոց մե-ծագոյն մասին: Այս տեղ՝ ինչպէս կերևի՝ ամենևին մուտ գործել չէ կարացած լա-տինահայ ունիթօռաց ճարտարահնար խո-րամանկութիւնն, մինչդեռ մօտակայ գիւ-ղօրայքը շատերը գլխովին ուրացուել են. Ռահկերտի նշանաւոր բազմամարդու-թեան և ծաղկեալ դրութեան վկայք են, մինչև ցայսօր դեռ նշմարելի աւերակներն ջրանցից, այգեաց, ջրաղացից և այլն:

Պատմեցին գիւղիս ծերունի բնակիչքը, թէ ,,Նախնեաց մեր գիւղումն քառասուն երկու ջաղաց ա. էլել, ու հազար հինգ հար-իւր տուն բազմութիւն,, Պարսից հար-տահարութիւններէն և անդադար ասպա-տակութեանց անթիւ հարուածներէն ստիպուած այդքան բազմութիւնը գաղ-թել ու փոխուել են զանազան տեղեր, ուր տեղ ապահով ապրելու յոյս ունե-ցած են. այժմ Ռուշի քաղաքին մէջ ա-

ռանձին Թաղ եւ առանձին եկեղեցի կայ «Պաղանչեցւոց» կոչուած, որոց մէջ կան դեռ մինչեւ ցայսօր Խանդամիրեան մեծանուն տոհմի շառաւիղները։ Գլխաւոր պարապմունք այժմու բնակչաց գիւղիս են երկրագործութիւնն, այգեգործութիւնն, խաշնարածութիւնն, մեղուաբուծութիւնըն, եւ շերամատածութիւնն. արհեստներըն են դարբնութիւն, հիւսնութիւն, ոստայնանկութիւն, եւ սափրչութիւն. երկրագործութիւնն ծաղկած է փոքր իշատէ, իսկ այգեգործութիւնն՝ գաղթականաց մէջ։ Ռամիկ ժողովրդականաց լեզուն Նախիջեւանի գաւառական բարբառն է, միայն շատ բառերի մէջ նկատուին Սիւնեցի հընչմունք, եւ այն մօտ դրացի լինելուն պատճառաւ է երեւի։

## Ազնաւորենց եկեղեցի։

Շահկերտի նախնի մեծութիւն, փարթամութիւն եւ բարեպաշտութիւն հըռ-

չափի հարկանողն այս եկեղեցին է «Ամե-նափրկիչ» անուամբ, ո՞ կարող է առանց զարմացման տեսնել այսպիսի ընդարձակ մեծագիր, և շքեղաշէն եկեղեցի մի. շի-նութիւն համակ սրբատաշ քարամբք տանիք եկեղեցւոյն և փոքրիկ կաթուղի-կէն վայելչաձև չորս փառաւոր և ամրա-պինդ սեանց վերայ հաստատուած են թաղակապ. ունի երեք սեղան, մինն մե-ջինն որ և աւագ, ընդարձակ և հոյակապ, և երկուքն աջ ու ձախ կողմերն, երկու խորաններին վերայ. սորա շինութեան թո-ւականն անյայտ է. գուցէ և փակուած լինէին ի ներքուստ, կաթուղիկէի բոլո-րակ պատուանդանին վերայ գրուած մե-ծատառ տողին մէջ. բայց դժբաղդաբար խոնաւութենէ եղծուած լինելով այնքան մեծի մասին, հնար չեղև գրի առնելու: Եկեղեցւոյ արևմտեան դրան ճակատին դրուած փոքրիկ խաչքարի վերայ կայ գր-ուած «Թւ. ՌՃԴ շինեցին», սակայն այս կամ խաչքարի շինութեան կամ տաճա-

րի Նորոգութեան թուականը պիտի լինի ըստ որում տաճարի հնութիւնը և քարերի արդէն մաշուած լինելը ցոյց կտան որ այդ թուականէն շատ յառաջ պիտի շինած լինի։ Եկեղեցւոյ պարսպապատ գաւթին մէջ կան քանի մի գերեզմաններ գետնին հետ հաւասարք, և առանց արձանագրոց. միայն մէկի վերայ այս արձանագիրն էր, Այս է պապան խօճայ Յովհաննէսին, որ փոխեցաւ առ Քրիստոս թվին ՌՃՂԱ,, գուցէ սա լինի Խանդամիրեան Յովհաննէս քաջ իշխանին գերեզմանն. որ թէև գեղակուր եղև Նախիջևանի մէջ, բայց հաւանական է կարծել որ մարմինն փոխադրուած լինի այս տեղ։ Նորա մահուան թուականի և այս արձանագրի մէջ հինգ տարի զանազանիլն միայն կարծիքի տակ կթողու։

## Ա. Յովհաննէս։

Գիւղի մէջ տեղը քարուկիր շինութեամբ եկեղեցի մի եղած է այժմ [illegible]

միայն Հարաւայէն կիսափուլ. որոնք և դու-ռըն իսկ այլ ամէն շինութիւն հեղեղէ բաժին է եղած. որ փոքր առ փոքր իւր սովորական ճանապարհը թողլով, և ըն-թացքը ուղղելով այս եկեղեցւոյ վերայ, սրբել է միանգամայն. որոյ ներքնոյ տե-ղըն այժմ ունենիք՝ սաղարթ արձակած են. յիշատակեալ դրան մէկ կողմի քարին վերայ միայն գտանք այս գրերս ‹‹ՊԴ››, գիւղացիք պատմեցին որ երեք տարի յա-ռաջ վայրի ոչխար մի իւր ոտքովն եկա-ւ պարկեց այս եկեղեցւոյ դրան առաջին խորև մատաղ և իրանք մորթեցին ու բաժանեցին բոլորի վերայ։

Պաղջնաւորայ։

Այն շինուածոց մէջ տեղ կոփածոյ քարամբք և կրով կանգնած ամուր և նշանաւոր շէնք մի է. որոյ արևմտեան կողմի տանիքն այժմ փլած, ինչպէս այժմ երթևեկ օտարականաց, նոյնպէս և ի հը-

նուէն մեծափառութեամբ կառուցանեալ հան-
գստարանն կամ իջեւանն է եղած։ Այս
կարաւանոցի չորս կողմն սփռուած են ա-
մայի կիսափուլ աւերակներն բնակարա-
նաց տառապակեր նախնի Ըահկերացւոյ.
բայց դոցա շատերն եւ հողէ հետ հաւա-
սարութեամբ այգիք են ձեւացած։ Կար-
վանատրայի արեւելակողմն իբրեւ երեսուն
քայլ հեռի, կայ կանգնած փայելչաքան-
դակ բարձր խաչքար մի, որոյ եզերքին
գրուած ‘‘Այս դրիգոր կանկնեցի խաչս
զայս իմ հոգւոյս . . . . թվ Ը.,, բայց
թէ ինչու համար կանգնեցրել են այս
տեղ այս խաչքարն չիմացուեցաւ։

Ներք Գ. [illegible]։

Հ. Միքայէլի յիշատակած բերդն է այս՝
ի Թիկանց Ըահկերտակ, ուր ապաւինեցան
Հեյտար խանի հարստահարութեան ե-
րեսէն ահաբեկեալ Ըահկերտցիք. այս
բերդն՝ յիրաւի ինչպէս կոչէ նոյն պատ-

ժամանակ յաւակուր և ճարահատ անձնատուր եղև ինքնին, և Հէյդարի չարամիտ հրաւիրանօքը Նախիջևան գնալով, դեղ մահու ընդունեց և կնքեց իւր կեանքը. Նորա հետ և այնքան ողորմելի գերդաստաններ զոհ գնացին անօրէն Պարսկի դաւաճանութեանն. արտասուելի ճշմարտութիւն է, որ բնութիւնը հայի բազուկը անգծելի զէնք հաստատեց, բայց զայն չգործածելու համար սիրար անկերպարան հրէշ մի դրաւ—անմիաբանութիւն, զայն ի ներքուստ միշտ կրծելու և թուլացնելու համար։

Այս տեղ ցարդ են պանծանօք կը յիշատակեն այն մեծ անցքերը բնակիչք տեղւոյս, Խանդամիրեան Յովհաննէս իշխանն, դժբաղդ հայ զօրագլուխն կոչեն «Խօջայ փանի», և այն արքասիրտ աներկիւղ այրն Գրիգոր, որ յարձակելով միայնակ աշխարհակէն պաշարող Պարսկաց վերայ հանձնեց է ի բաց, ինչպէս կը գրէ Ռ. Աբգարեանը (Հատ. գ. եր. 846) կան-

ւանեն մանկանու ամբ ‘‘Սարու Գիրգոր,, կենան ցարդ եւս և աւերակ տեղիք երկու այգեաց և տանց խանդամիրեան իշխանի, որոնք բնակչաց մէջ կասուին ‘‘Խօճայ Մանու յիգին,, ‘‘Խօճայ Մանու տնե-րը,,:

## Շահ—բէկի ձոր

Շարկերտի արևելակողմն է այս ձորը կպատմէ տեղական աւանդութիւնն, թէ նորա համար կոչուեցաւ ‘‘Շահ—բէկի,, որ Ղազանչեցի Խօջայ Գօստին Շահ Աբբասին այս տեղ արքայավայել ճոխ սեղան տալով հրաման առաւ շահէն որ և իցէ շնորհ խնդրելու. և խնդրեց թէ ինձ իրաւունք տուր այս տեղ գեղ շի-նեմ, և ի պատիւ ձեր անունն դնեմ ‘‘Շահ գիւղ,, ի. և շահն հաւանելով առաջարկութեանն, կկատարէ հայցուա-ծըն երևի թէ ասպատակութեանց գերու-թեանց և հարստահարութեանց պատ-

Ծառաւ այս աւանն ժամանակաւ բոլորո-վին անմարդացել և ամայացել էր, մին-չև որ Ռահարբասոք հրամանաւ յիշա-տակեալ խօճայ Կիրակոսին կրկին բնակու-թեամբ զարդարել է. ինչպէս աւանդու-թիւնն ցոյց կուայ. կամ զուցէ աւելի. հին ժամանակի տալու փոխանակ, Ռահար-բասի օրով կղնէ այսպիսի անցք մի, ա-պա թէ ոչ, Ռահկերտ անունն շատ հին է քան զՌահարբաս։

Մամուրը Ռահկերտի։

Գիւղի առաջեւալը, Ներքնակ գետափ մէ-րայ կանգնած կոփածոյ քարանց և թա-ղակայ ամուր շինուած կամուրջ մի է, յիշատակ խօճայ Պօղոսի Գազանչեցւոյ. որոյ և յիշատակարանն կար արձանա-գրած ճակատին, բայց ջրոյ յորդութեան պատճառաւ չկարացի մօտենալ ու կար-դալ։

## Թէյլող

Պաղանչուն սահմանակից և իրր չորս վերստ հեռաւորութեամբ հովտաձև դաշտակի մէջ շինուած է այս գիւղն, երբեմն, հայաբնակ. այժմ ունի իւր մէջ երեսուն տուն մահմետական բնակիչ. հայոց տների աւերակներն և գերեզմաններն կան գիւղի արեւելակողմն. բլրակի վերայ, գերեզմաններն շատ հին են, ուստի և արձանագրութիւններն եղծուած ու մամռապատ լինելով չկարդացուեցան, միայն մեծ խաչքար մի կար կանգնած, որոյ ճակատին գրուած ''Թվին ՌՆԴ,, և խաչի պատուանդանին ''ի բարեխօսութիւն Գուլթի,, միւսներն անվերծանելիք:

## Ներքեւի Թէյլողէ

Գիւղի մէջ տեղն միջակ մեծութեամբ և բարձրութեամբ փառաւոր և գեղեցիկ

շէնք մի է, կոփածոյ քարերով կանգնած թաղակապ, չորս սիւների վերայ. տանիքն երկու տեղ փլած. ամենևին չունէր արձանագիր, ունի մի սեղան և երկու աւանդատուն. ձախակողման դասու սեան մօտը գերեզման մի կայ, որոյ կոփածոյ մահարձանը չունէր գիր։

## Վերին անգուր. (Բուն Ընգուր)

Թէյվաղին սահմանակից դարաւանդի վերայ տարածուած գիւղ մի է, բնակութիւն 40 տուն մահմետականաց. իսկ ի հնումն բազմամարդ աւան Հայոց. որոց քարաշէն շինուածոց կան և կմնան աւերակներն. անունն ''Ընգուր Հայացի ''Ընկզաձոր բառն է, առնուած ինչպէս այս, նոյնպէս և երկու համանուն գիւղերի ընկզենեաց թանձրութենէն, որ աղաւաղուելով տաճկական շրթանց մէջ դարձել է ''Ընգուր,,

## Ներքին Գեղը

Քարաշէն վայելչակերտ, և փոքր դրութեամբ փառաւոր եկեղեցի է. չորս կիսասեանց վերայ թաղերով հաստատուած. ունի սեղան մի, և երկու աւանդատուն և դուռն մի արևմտեան. տանիքը եկեղեցւոյն միանգամայն խոնարհած է։ Դրան արտաքին ճակատաքարի վերայ գրուած է «Հիմնարկեցաւ ի թուական ՌՃԿԸ առաջնորդութեամբ մերս Տեառն Մատթէոսի արհի եպիսկոպոսի»։ Երևմտակողմըն գիւղին է ընդարձակ գերեզմանատունն Հայոց հին ժամանակի։

## Միջին Ընդուր (Օշնայ—Ընդուր)

Վերնոյն սահմանակից՝ ձորակի մի մէջ կանկանի այս գիւղ, հնումն հայաբնակ, իսկ այժմ տասն տուն մահմետականաց պատսպարան. հայ շինուածոց կիսակործան աւերակներն կան միայն։

# Եկեղեցի Գեղմ։

Գիւղի արեւմտակողմն բարձրաւանդակի վերայ շինուած է այս եկեղեցի անշուք, միջակ մեծութեամբ. այժմ չորս որմունքն կան. հարաւակողմն՝ եկեղեցւոյս պարսպի տակ է գերեզմանատունն Հայոց. որոց արձանագրերէն վեր առինք միայն հետեւեալքս.

"Այս է Տապան Ըննիկին տէրտէրի Թ. ՌՃԽԶ ին.,

"Այս է Տապան Մաթոսին Թուին ՌՃԼ.,,

Է և միւս գերեզմանատուն Հայոց բաւական մեծատարած, եկեղեցւոյ արեւելակողմն, ճանապարհի ձախ թեւի վերայ, միայն հնութեան երեսէն արձանագրերն բոլորն եղծուած։

## Ներքին Ընգզոտ (Գէղ Ընգզոտ)

Ձորի մէջ ընկած քառասուն տուն մահմեդական բնակիչ ունեցող գիւղ մի է, ի հնումն փարթամ և բազմամարդ աւան հայոց. ինչպէս ցոյց են տալիս նախկին հայակերտ կիսաւեր շինուածոց մնացորդքն, և ընդարձակ գերեզմանատունն. բոլոր շինութիւնքն փառաւոր, մեծամեծ բարձր, և քարաշէն։

## Անկեղեցի գեղը,

Բարուկիր Թաղակապ. և հոյաշէն շինութիւն է, չորս սեանց վերայ հաստատուած, այժմ ամենայն կէսն և որմոց շատ տեղերն խոնարհեալ։

Գիւղին մէջ տեղը ձգուած ձիթահանի քար մի տեսի։ որոյ տափակ երեսին վերայ գրուած էր ‹‹Այս սրանոցն Աղէք-սանի որդւոյն (քանի մի գիրն անվերծա-

նելի) Թվին Ռ.Ճ՛Ն,։ դերեզմանատունն տխուր զգացմամբ շրջելէն յետոյ հետեւեալ արձանագիրս միայն առնել հարկ համարեցի, որք են.

‘‘Այս է տապան Նաւասարդի որդի Աստուրին. Թվին Ռ,,

‘‘Այս է տապան Նատուրին, որ հանգեաւ առ Քրիստոս Թվին ՌԳ.Դ,,

‘‘Թվին Ռ.Ճ՛Ն այս է տապան Նուասա խղլաթին որ փոխեցաւ առ Քրիստոս,,

‘‘Այս է տապան Նուասա Սարգսին Թվին Ռ.Ճ՛Փ.Օ.,.

‘‘Տապանս Վ.արդիկին Թվ.Ռ.Ճ՛ՆԴ,։

Այս Թուականների վերայ ուշ դարձնելով կտեսնենք որ շատ ժամանակ չէ անցած գիւղիս հայ բնակչաց ջնջուելը, և տաճկաբնակ լինելը. բայց Թէ որպիսի առԹիւ և ճակատագրով, դժուարին է գիտել. գերեզմանոցի արևելակողմն ճանապարհի ներքևը երկար ու կարգաւ ձըգուած կան մնացորդք աւերակաց փոքրադիր շինուԹեանց, և կերևի որ եղած լի-

նին ժամանակին կրպակները։ Կան նաև այգեաց նշմարելի ցանկեր․ և ամէնքն ի հարկէ ցոյց կուտան գիւղի երբեմնին մեծութիւնը, փարթամութիւնը, և բնակչաց աշխատասիրութիւնն։

## Բօռոսք.

Հովտաձև դաշտակի մի վերայ կանգնանի այս գիւղը, երբեմն նշանաւոր ծաղկեալ և փարթամ աւանն Հայոց. աւանդութիւն մնացել ծերոցն կ՚ասէ՝ որ հընումն քառասուն չորս գլխաւոր վաճառականք կային (խօճայք) որոց տուրևառն էր Պոլսոյ և այլ նշանաւոր տեղեաց հետ։ Գիւղս բազմաթիւ հոյակապ և մեծածախս հին շինութիւններն տեսնողն, յիրաւի կարդարացնէ աւանդութիւնն. Շըքեղակառոյց եկեղեցիքն և Մենաստաններն, փառաւոր և հոյաշէն տներն, և սենեականներն (չէրդամբի) աղբիւրներն, ջըրամբարներն և գիւղի հարաւակողմն ցան և ցիր սփռած պէսպէս շինուածոց մնա-

նեցաւ Կաթուղիկէս եկեղեցւոյս ի Հայ-
րապետութեան Տեառն Աղէքսանդրի և
առաջնորդութեան սուրբ Կարապետին
Սիմէօն վարդապետի. արդեամբ Ր. օսօ-
թայ իշխանաց Սամուէլին. Նշմարէն,
(եղծեալ քանի մի բառն) Թվ. Ռ՚ՃԺԳ.,
ունի տաճարն երեք դուռն. արևմտեանն
փառաւոր, մեծ, և գեղաքանդակ, գործ
ճարտարութեամբ մասին. առաջեաւ դրանս
եղած է նոյնպէս մեծ վայելուչ գաւիթ
չորս սեանց վերայ Թաղով հաստատու-
ած, որ յամի 1841 կործանուելով (նոյն-
պէս և կաթուղիկէի հիւսիսային գագա-
թը) երկրաշարժէն փլատակի տակն ա-
ռած է մօտակայ տան մի բնակիչ. Հինգ
անձինք. այժմ կան միայն չորս կամարի
հիմունքն. Այս գաւթիս մէջ եղած են
մինչև տասնի չափ խաչքարինք, որոց մի
քանին գեղաքանդակ, և կգտուին այժմ
եկեղեցւոյ մէջ. երկուքի արձանագիրն
առինք ի գիր, մինն այս «սուրբ խաչս
կանգնեցաւ ի թվիս Ջ. ԽԱ՝ Հօգւոյ փրր-

կութեան Եղազարին և իւր կողակցին Նուշինկին և իւր ծնողացն խութլի բէկին Օղաքարին Հուռումնին Մեսիրին,, միւ- սըն՝ «Սուրբ խաչս յիշատակէ Եմիրին ծնողաց Մարխամին որդւոյն Եղիզ բէկին Եսայահանայ Թ. ՌԳՆ,, շուրջ եկեղե- ցեաւս է պարիսպ քարաշէն, տաճարի հարաւակողմն եղած են աղիւսակերտ թաղաշէն վայելչաձև սենեակք, որոնք այժմ աւեր են:

### Սուրբ Նշան եկեղեցի.

Ս. Յակոբայ յարաւակողմն է այս աւե- րեալ եկեղեցին որ եղած է բաւական մեծ և շքեղ. այժմ կտեսնուին միայն արեւմը- տեան և հարաւային որմունքն քարա- շէն և չորս սների ու սեղանոյ հիմունքն. ունեցել է և գաւիթ փառաւոր երկու սների վերայ հաստատուած, որոց միոյն դեռ կէսն կանգուն միւսն մինչև հիմն խո- նարհեալ. հարաւային դրան ճակատա- քարի ներքին երեսի վերայ գրուած էր

տիս. և Ծնողացն Գրիգորին և Զօրիկն կողակիցն Սողոմին որդ, Սրգըրին եղբարցըն Թամթոսն Ճկզ,, միւսն եղծեալ։ Դրան առաջեւ եղած է աղիւսակերտ կամարակապ գաւիթ երեք սեանց վերայ. այժմ կործան. գաւթի հարաւային սեան տակն է գերեզման խօջայ Խառումին, որ խեղդամահ եղած է անապատիս կրօնաւորներէ, անարգանաց վրէժն առնելու համար*). Սենատանիս չորս կողմն եղած

(*) Աւանդութիւն բնակչացն կայ, որ, առաջուայ 1500 տուն բնակիչներէն երեք հարիւրն մահմետական էին. որոց մոլլայն կախարդական բժժանքը յինքըն ձգելով անապատիս կրօնաւորներէ կուսաններէն երկու գեռափթիթ չքնաղ աղջիկներ, երկու տարուայ չափ գաղտաբար կպահէ զերենք իւր տան մէջ. յայտնի լինելէն յետոյ խօճայ Խառումն գիւղի միւս խաճաներէ հետ վրէժխնդրութեան հնար մտածելով, գիշերուան մի մէջ տաճկաց մզկիթն այնպէս կործանել և յատակել կուտայ, որ նշանն անգամ չերևի. ձայնն Նախիջեւանի Զանդ Քեարիմ խանին հասնելով հրա-

են քարաշէն ամենաշքեղներ մանաւանդ Հարաւակողմն, որն բնակարան կրօնաւորերոցն և որն զանազան պիտոյից Համար, — Հարաւային պարիսպի տակն է. և այգին փակուցս որ մինչև Հիմայ ևս «անապատի բաղ» կասուի. որոյ մէջն է ընկուզենի մի «Մարգարտի ծառ», կոչեցեալ յանուն կուսի ուրումն Հիւսիսային պարսպի տակն է գերեզմանոցն կուսանաց ուր կան միանաչափ գերեզմանք, որոց երկուքի արձանագրերն գրի առի, որք են «Այս է տապան Փանիկէի դուստր Անուշին փոխեցաւ առ Քրիստոս ԹՎ. ՌՃՀԱ», «Այս է տապան Պետրոսի դուստր Կատաթին փոխեցաւ առ Քրիստոս Թ. ՌՃՀ»:

---

մայէ խնդրել Խառումը: Գիւղի Հիւսիսակողմն կան ջուրք և խօձայ Խառումի աւերակ տներն. իսկ առօրերկրեայ կամարակապ «գերեզմանքն» դեռ [illegible]:

թի մէջն, ինչպէս ասացի կան երկու եւ-րոպացւոց չիրիմներ, միայն աղխմներին դարմանելուն պատճառաւ չտեսի: Տաճա-րի հարաւակողմը է ահագին վանից որ ունի սաւազան կոփածոյ քարերով, եւ այ-ժըմ ցամաք է ու աւեր. աստի հանած են մարմարեայ քար մի, որոյ վերայ գրուած է “Երգի Թուականիս Ռ.Ճ՛Ժ.Գ., մեք Շ.Օ-ռօթեցի Փշրկանց Խօճա Սահակ եւ Զա-քարեայս բերաք աղբիւր ի գեօղն յիշա-տակ մեզ եւ ծնողացն Մ՚հդասի Մարգա-րին եւ Նազլու-խանին եւ կողակցացն մե-րոց Մարեամանցն եւ մեր որդւոցն Խումա-սին ի ժամանակս Հայրապետութեան Տեառն Յակոբայ եւ Թագաւորութեան փոքր Շահաբասին. յիշողքդ յիշեալ լիջիք,, մի եւ նոյնն գրուած էր պարսկերէն լեզուաւ Հայերէնէն վեր. արտաքոյ պա-րսպին արեւմտակողմը եւ հարաւակողմը ազգի ազգի շինուածոց կիսակործան մնացորդներն կան. իսկ հիւսիսակող-մըն պարսպին կից, է կրապատ քարա-

շէն ջրամբար մը, ուր տեղ ջրերը ժողովելով գործ դրած են վանուց ջրաղացը շարժելու համար. այս ջրամբարէն փոքր ինչ հեռի է գերեզմանատունն, ուր կան երեք փառաւոր չիրիմք. առաջեւ մենաստանին կանկանի առու ձորակաձև, ուստի կվազեն սովորաբար հեղեղացած անձրևաջրերը։ Տաճարի դիմացը կանգնող ու մտիկ տուող աչքին կներկայանայ ամէն կողմէն չքնաղ և զուարճալի տեսարան. Յայտնի չէ թէ երբ ամայացած է այս մենաստանն, միայն ցաւալի է որ դեռ նոյն վիճակի մէջ է, կալուածոց շատերը թէև անտէրութեան պատճառաւ ընկած է Թուրքերի ձեռք, բայց գործունեայ ձեռքով շուտով կհաւաքուէին, ըստ որում օտարանալը շատ ժամանակ չէ։

## Ս. Ստեփաննոս.

Շօռութէն հինգ վերստ հեռաւորութեամբ դէպ ի հարաւ լեռան մի գլխին շինուած է այս մատուռն յանուն Ս.

Ոսկեփորձնոսի, շէնքն հասարակ քարով և հողով. իսկ տանիքն թրծած աղիւսով թաղ տուած. ունի և սեղան մի փոքրիկ. բեմի առաջին կանգնած նորաքանդակ խաչքար մի կայ, եզերքն արձանագրուած «Սուրբ խաչս կանգնեցաւ՝ հոգւոյ փրր-կութեան Ըլխթիարիս. Սաւլանի Սեկանց Հարիա Ռէս,, խաչի պատուանդանին «Աստուածատուրի Վահրամին Միրայ-մարգին Մելքիսեթին Տասունմ Գ. աղա-մին Գ. ուլումին ի թվին ՌՃՆ,, Սա-րան առաջին գաւթի ձևով երկ յարկ երկու սենեակ կային քարաշէն, կիսաւեր:

## Ս. Եղիա Մարգարէ

Գիւղի հարաւակողմն, բլրակի մի վե-րայ կայ աւերակ փոքրիկ մատուռն յանուն Եղիա Մարգարէի:

## Եկեղեց. Գիւղի.

Գիւղին մէջ երեք տեղ խողովակնե-րով բերուած է ջուր. երկուքն այժմ տ-

շինութեամբ Հայրաւանքին ոճին լճին. Ջա-քանդքն այնքան լայն շինուած է, որ մարդ մի կարող է քիչ մի կորացած մտնել ներս։ Մ՝ խորշք լճին դարձեալ Փշրկանց քաղ-նամարդ ցեղի շառաւիղքն են, Հայա-զատողն Սահակ, և Զաքար, վերջի-շատանկեալ աղբիւրների բերողները, որոց և յիշատակն մարմարեայ քարի վերայ գրուած, կայ ագուցած նոյն Հայրաւանքին որմոյն մէջ։

Գերեզմանատուն Ն․որատուսոյ.

Ընդարձակ գերեզմանատուն մի է, շքեղ և բազմաթիւ մահարձաններն այցելուի զարմանքն շարժողն. ուր կան բաւական Հին շիրիմներ, բայց ամենէն աւելի աչքի զարկողներն և նշանաւորներն Փշրկանց մեծատուն ցեղի գերդաստանաց գերեզ-մաններն են, որոց միայն քարը գրի առ-նուլ Հարկ համարեցինք. և ահա են.

«Այս է տապան Ղ․ազարի որդի Գի-ւան բէկի, աղա Մ՝ուրատին որ փոխեցաւ

Գիւղն արեւմտակողմն՝ ձորակի վերայ ձգուած կան երեք քարաշէն ամուր կամարջներ, երեքն եւս կիսաւեր։

### Փորադաշ.

Շաւութի արեւմտակողմն դարաւանդի մի վերայ ձգուած գիւղ է այս, այժմ բը-նակութիւն քառասնաչափ աղքատ Հայ գերդաստանաց։ Անունն "Փորադաշտ,, ըստ ոմանց է "Փարադաշտ,, և յառաջ եկած իբր թէ փարայ և դաշտ բառերէն. ըստ որում գիւղին մօտ դաշտի մի մէջ կգտնուին փարայի այն է դրամի ձև ունեցող շատ քարեր։ Այս տեղ մեռաւ գեղակուր, Մաղաքիա վարդապետ Գիւմիւջի։ — Միքայէլ Չամչեան սխալմամբ այս գիւղն կկարծէ լինել ի Գուգարս, այնքան գոնէ ուշ չդարձնելով, որ իւր պատմած անցքերը Երնջակի մէջն են պատահած և ոչ ի Գուգարս։

### Ս. Գէորգ Եկեղեցի.

Փոքրիկ, հասարակ քարերով շինուած. փայտածածք անշուք եկեղեցի մ՚է, գիւղի մէջ տեղն։

### Ս. Եղիա.

Յանուն Մարգարէին փոքրիկ մատուռ մ՚, գիւղի արեւմտակողմն բարձրացած լեռնակի գլխին, այժմ աւերակ. հին փորադաշտը այժմու գիւղէն կէս վերստ հեռաւորութեամբ կանկանի հիւսիսակողմն, զառ ի վայր լեռնոտի վերայ. պահելով մինչեւ այսօր իւր կիսակործան աւերակներն քարաշէն. որոց մէջն է եւ կիսաւեր եկեղեցի մի քարգուղիր եւ կամարակապ շինութեամբ, որոյ համար բնակչաց աւանդութիւնն կասէ “Գրանկի եկեղեցի” եւ հարցրած ժամանակս պատմեցին թէ “պապանենկան լսած ենք, որ գիւղի կեան

աւանդութիւն այս մենաստանիս համար կայ, որ շատ հին է, և այս տեղ կնստէր վիճակիս առաջնորդը. երբ որ (կասեն) Փռանկութիւնն Ռուսաց յառաջ եկաւ, Յովհան Արտունեցին այս տեղէն գնաց Ապրակունիս, և սուրբ Կարապետի վանքը շինելով կանգնեց նրանց հակառակ։

Այս մենաստանն ունի յիսուն խալվարաչափ գետին, սեպհականութիւն, բայց անհոգ և անխնամ մնալով թուրք բէկի ձեռքն է ընկած գաղտաբար։ Հինգ տարի յառաջ սուրբ Էջմիածնի Սինհոդոսի հրամանաւ և թղթատուութեամբ վանուցըս սեպհականութիւն համարուած լերան մի միջէն մերձաւոր տեղեաց բնակիչներէն երկուքը սկսան պեղել ու պղինձ հանել, բայց առ հարկի աղքատութեանն անկարող գտնուեցան շարունակելու։

### Գէաղ.

Խլանդաղայ արևելեան հիւսիսակողմն սեպացեալ լերան ստորոտին շինուած է

րեկ, հողաշէն և փայտածածք. դժուար է որոշել թէ ինչու համար «Նահատակ» անուանս առած է այս եկեղեցի, որոյ ուխտաւորները միշտ անպակաս են. եկեղեցւոյ տակէն կբղխէ աղբիւր մի յորդ. որոյ ջուրն փոքր մի գաղջ լինելով, ընդունուած է այս կողմերի բնակչաց մէջ հանքային առողջարար ջրոյ տեղ:

## Անապատ.

Նահատակի արևմտակողմն Խանդազւոյ ստորոտին փոքրիկ բլրակի մի վերայ կան նշմարելի մնացորդք հիման փոքրիկ մատրան, և մէջտեղն կիսամաշ խաչքար մի. բնակիչք այս մատուռն «անապատ» կանուանեն. և դուցէ ժամանակին, անապատաւէր անձին ճգնարանն եղած է. ստորա մօտն է բարեհամ աղբիւր մի, ուռենեօք զարդարուած որոյ ջուրն ժամանակաւ խողովակներով տարուած է գիւղը. երկիւղալի ժամանակներն, բնակչաց գիւ-

գլխն՝ Կլանդաղույ գլխին նահրացած միջոցը, այս աղբիւրներն եղած է նոցա պատուէքը զովացնողը. այսպիսի աղբիւր մի կա, որ սորա Հիւսիսակողմն է, դարձեալ խոնա-փախներով տարուած է գիւղն։

## Ա. Լեռներ.

Գիւղի հիւսիսակողմն երկայնեած բար-ձըր լերան գլխին կայ փոքրիկ մատուռ մի կիսաւեր, յանուն Եղիայ Մարգարէին։

## Հին Կանգառեղ.

Գիւղի արեւմտեան հարաւակողմն, այ-գեստանոյց մէջ ընկած աւերակն կենայ միայն եկեղեցւոյ, զոր ,,վանք,, կանուա-նեն սովորաբար բնակիչքն։

## Ներք Գետեղ.

Գիւղի բնակութեանց առաջնոյն, գետոյն արեւելեանկողմն բարձրացած դժուարամատ-չելի լեռնակի գլխին քարաշէն աւեր պա-

րիտայներով զրջապատուած ապաստանա-
րանն է Հին բնակչաց որք և երբեմն երբեմն
ցցուած են ինչպես ծերունիքն կապա-
ման, իւրեանց կորովաբարոյ անմեհեր-
քաջութիւններն Պարսից յարձակմանց և
տապատակութեանց. դէմ, այժմ շրջա-
պատ պարիսպն կիսաւեր է։ Ներդիս ա-
ռեւմտեան ծայրին փոքրիկ մատուռ մի կայ
միանգամայն այժմ աւեր. իսկ Հիւսիսա-
կողմն, բերդէն քիչ մի անջատ, է դար-
ձեալ միւս եւս մատուռ փոքրիկ զոր բը-
նակիչքը կանուանեն «Սուրբ Սարգիս»,
ուր կան քանի մի խաչքարինք առանց
արձանագրաց։

Գուր Գիւղիս.

Տեղւոյս այգիները ոռոգող և անայքին
զանազան պէտոյից համար գործածուած
ջրերը աղբիւրներ են, Հին ժամանակին
բազմաթիւ ձեռնհաս խօջաներէ Հոգացո-
ղութեամբ խողովակներով հեռու տեղե-

րէն բերուած ինչպէս և մէկ երկուքի համար յիշեցի. այժմ երեք ջրամբարներ կան. մինն ''Նահատակի,, աղբիւրի ջրոյ առաջն, ուստի և այգիքն և պարտէզները֊րըն կոռոգուին.*) մինն գիւղի մէջ տեղ, ուստի խմելու և այլ պիտոյից ջուրը գործ կածեն. և միւսն գիւղի արևելակողմն բաւական հեռի, որ յանուն շինողին կը֊կոչուի ''Սուքեալի գեօլ,,

Այգեգործութիւնն կատարելապէս ծաղկած է նոցա մէջ ուստի և ամէն տարի այգիք առատ արգասաւորութեամբ կվարձատրեն ժիր երկրագործի քրտինքը: Առհասարակ քաջ և զինավարժ են գիւղիս բնակիչներն և մինչև այժմ ոչ մէկը վնասուած չէ գողի ձեռքէ, վասն զի ամէն

---

(*) Այս ջուրն հնումն աւելի մեծ և ընդարձակ ջրամբարի մէջ ժողոված ունենալով, գործ են դրած ջրաղաց մի բանեցնելու համար. այժմ կան միայն սրբատաշ քարերով շինուած ջրամբարի և ջրաղացի աւեր մնացորդներն.

շրջակայ բնակչաց մէջ ակնածելի են և հռչակուած հին ժամանակէ ի վեր մինչև այսօր։

## Ջուղայ (Հին).

Հայկեան պատմութեան մէջ այնքան նշանաւոր և փառաւոր տեղ գրաւող հռչակաւոր, հինօրեայ և փարթամ քաղաքն Հայոց, Երասխ գետի եզերքին, Երնջակ և Գողթն գաւառաց սահմանակցութեան մէջ. որ և ամէն դարուց մէջ գլխովին անցած անցքերովն, կամ մեծագործ և անուանի բնակչաց համբաւովն ամենի հետաքրքրութիւնն և ակնածութիւնն կշարժէ։

Այս տեղ ձեռնադրեց Բարդուղիմէոս առաքեալն իւր Կոմսի աշակերտն յԵպիսկոպոսութիւն Գողթան. այս տեղէն յառաջ եկին այնքան նշանաւոր մարդիկ, որոց ոմանք իւրեանց նիւթական կարողութեամբն մեծամեծ ձեռնարկներու մէջ

միրացան. և ունանք ազգային հանրական գործերի մէջ փայլեցան։ Այս տեղ այնքան ծաղկեցաւ և զարգացաւ վաճառականութիւնն, որ Շահաբբասայ հեռաւորութիւնը դրդելով՝ յամի 1605 անխնայ տանջանօք և չարաչար տառապակրութեամբ գաղթել տուաւ բնակիչքը միւս գաղթականներէն զատ, Պարսկաստանի մէջ սոցա ձեռօք առուտուրն ծաղկեցանելու համար։ Նոյն Ջուղայեցւոց շառաւիղք էին և մեծանուն իշխանքն Լազարեանք ի Մոսկուայ։ Ս. Էջմիածնի շինութեանց շատերը դեռ մինչև այսօր Ջուղայեցւոց յիշատակովը կփայլին, ևլն։

Այժմու Նորաշէն Ջուղայն, որ հնէն վերստ մի հեռացած է, կբաղկանայ յիսնաչափ Հայ գերդաստաններէ, և կանկանի զարմեալ Երասխայ հիւսիսեզերը, լեռներով երկու կողմէն շրջապատուած դիրք ունի. մի՝ բնակիչքն լոտ մեծի մասնեգաղթականք են. նոյն փոքր մնաց միջակս իրանք կանէն, մնացորդ են առաջնոյն, ա-

րանք գաղթելու միջոցին եօթն տան չափ կարդացած են հնար գտնել ազատուելու, և այժմ բաւական բազմացած են. որոց լեզուն միանգամայն կատարբերի եկաց և Նախիջևանի կամ Երևանայ բարբառէն զօ. "երթամամ, երթամաս, երթամայ, երթամանք, երթամաք, երթաման. առումամ, առումաս, առումայ, առումանք, առումաք, առուման,, ևլն: Ոցա աւելորդն, իրանց մէջն դեռ կան շառաւիղք Խօջայ Խաչիկի, հովանաւոյն Լազարեան տոհմի:

## Ս. Գէորգ.

Նոր շինուած գիւղի հիւսիսային ծայրին է այս եկեղեցին յանուն Ս. Գէորգայ, հին Ս. Գէորգ եկեղեցւոյ պատուոյ համար, որոյ աւերակները առաջին Գիւղայի մէջն են. շինութիւնն հասարակ և անշուք, տանիքն փայտածածք. աւանդատնի առաջի պատին մէջ արուած մար-

Տիրամօրն. որոյ արևմտեան որմն Հայ կանգուն, կոփածոյ կարմիր քարամբք գեղեցկաշէն. Եկեղեցւոյ չորս կողմն է գերեզմանատուն. գերեզմանաց շատը Հին, որոնք զարդարուած են նուրբ փորագրած մեծամեծ կանգուն խաչքարերով. միայն մէկի այս Թուականն՝ որ բոլորի մէջ Հինն երևեցաւ, կարանումք այս տեղ. Խաչի քառակուսի մէջոցներըը գրուած էր " Թ|Ռ / Ե|Ը ", և տակը "Սուրբ Խաչս յիշատակ Պարդաշին, Ստաթին, Խաթունին Հոգուն ",:

Աստուածածնի Հիւսիսակողմն Նորախի եզրին բարձրացած բլրակի գագաթին կան կիսաւեր Մնացորդք բազմաթիւ քարուկիր շինութեանց — սենեկաց և պարըսպաց, որոց մէջ է և մատուռ մի այլ՝ փոքրիկ, քարաշէն, Թաղակապ և անշքաւ, դարձեալ Տիրամօր անուամբ, որ ունի և սեղան փոքրիկ: Դրան Հիւսիսակողմն արտաքուստ որմոյն մէջ հաստատուած մեծ խաչքարի մը վերայ վերադրած է " Աստուած ողորմի Աղամալէին ",. միւսներն

եղծեալ. սորա աջակողմն փոքրիկ խաչ-
քարի մի վերայ "Խաչս յիշատակ է
Մ՝կրտչին Աստուած . . . . . Թվ.
ՌԼ". սեղանոյ ձախ սեան վերայ դրը-
ուած խաչքարի վերայ "Խաչս յիշատակ
Սահակին" Թուականն եղծեալ: Մատ-
րան արեւելակողմն գտնուող միապաղաղ
ընդարձակ ժայռը կերջապատէ քարաշէն,
ամուր եւ բարձր պարիսպ, որոց համար
կասեն "Աստուածածնի բաղ", բայց հա-
ւանական չէ ինչու ապաստանած բլուրի գըր-
խին այդւոյ, որքան ժամանակին պատըս-
պարանք լինելն.

Աստուածածնի արեւմտակողմն միապա-
ղաղ բարձրացած ժայռին գլխին կան մնա-
ցորդք կիսաւեր պարսպաց, զոր կո-
չուածեն "Ջուղայու բերդ" կամ
"Խարաբագեղի գլխի բերդ", որ յիշուի
անմատչելի պատսպարան մի եղած է ժա-
մանակաւ. "Խարաբագլոյ" կատարի բեր-
դի եւ Նշանաքի մէջ անդրի փոսով բարձր
պարսպապատութ գործան, որով փակուած

է եղել դէպ ի բուն Ջ․ուղայն տանող ճանապարհն. այժմ սորա աւեր մնացորդքն կնշմարուին։ Մ՚եծ դարբասխ կամ գրանս առաջոյն Երասխի մէջ կայ այժմ մեծ բեկոր ժայռի, և նորա գլխին կոփածոյ քարամբք կանգնած շինութեան նշխարքը, սա ինքն է, որ բնակչաց մէջ կասուի ''Շահ-Թախթը,,. Աւանդական աւանդութիւնն կպատմէ որ սորա մէջ (շինուածոյն) խօջայ խաչիկն Շահարբաղը մեծարելով հացկերութիւ, համեր է ի սպաս ոսկի խաղող, ոսկի խնձոր և հաւկիթ, ու այլ տեսակ արուեստաշէն ոսկենիւթ մրգեղէններ. Շահաբբասն նախ բնականն կարծելով ձեռք է պարզեր դէպ ի խաղողն, բայց երբոր իւր մէջերի ապզաբարութեամբն կհասկանայ արած սխալն, զարմացած այսքան փարթամութեան և յառաջադիմութեան վերայ, մտքը կդնէ գաղթեցնել Ջ․ուղայեցիքը, ինչպէս և արար։ Շահ-Թախթի գտնուած տեղն Երասխայ ջրոյ պտոյտ առնելու

պատճառաւ կկոչուի ‘‘ Պատան ,,. Նոյն աւանդութիւնն կասէ դարձեալ, թէ Ջուղայեցւոց գաղթած ժամանակը Շահ-աբբասի հրամանաւ, յիշատակեալ Աստուածածնի բանալիքը ձգած են այս Պատանի մէջ, նշան՝ որ Ջուղայեցիք մայրենիքէն հանեն միւսանգամ նորա դուռըն բանալու։ Շահ-Թախթէն քառորդ վերստ հեռաւորութեամբ Երասխայ հիւսիսային եզերքը տարածուած երկայնաձիգ հովտին մէջ կանկանին բուն Ջուղայի աւերակներն, այցելուի դառն զգացմունքը շարժողներն, բոլորն քարուկիր, և շատերն փառաւոր շինուածոց նշխարք, ինչպէս շքեղ եկեղեցեաց, մեծամեծ տանց, ընդարձակ կարաւանոցի, եւն։ Աւերակացս հանդէպն Երասխայ միւս եզեր վերայ է ամայի՝ բայց ընդարձակ և քարաշէն կարաւանոց (քարվանսարայ)՝ նախնի մեծափարթամ կարաւանի իջևանը. Նորա մօտն և եկեղեցի մը, զոր ‘‘ Չքն-ռանկի ,, կանուանեն բնակիչքն։ Այսպէ-

ւի կափչի կչու որի միանգամայն, տեսնելով այսքան դերբօրինակ կատարելագործուած և զարմանչելարուեստ նուրբ քանդակագործութիւնները *)։

Զիացմամբ մեծաւ և տխուր զգացմամբ դառնալով մեջնեկին, Հայրն Համբարձեցի եօթնի չափ միայն առաջնորդիր տանելուան աճիւնը քաղաքապետին անդուպս Խօջայ Խաչիկայ, որոյ Համար բնակիչք պատմեցին լինել Հայն Լ․․․ւյպարեան տոհմին։ Մատուռըն, որ կանգնուած էր ամբիունացած մարմնոյ վերայ, ունէր միջնակէտին գեղաքանդակ բարձր խաչքար, որոյ բուն վերին ծայրի վերայ երկու անջատ տողերով գրուած ՝՝ Սուրբ խաչս բարեխօսեն առ Աստուած մեծ և անուանի քաղաքապետ Խոջայ Խաչիկին որ ի ՌՇԿԳ թուա-

---

(*) 1871 թուականին այս Խաչքարերէն չորս Հատ ընտրուած բերուեցան Նախիջեւան քաղաք, անտի Տփխիս տարուին Թանգարանը Հասուցանելու Համար։

չորս կողմն բաշխուած է պարիսպ բարձր և ամուր, քարուկիր շինութեամբ, որ մէջ առած է արևմտակողմի կամարակապ քարաշէն խցերն կրօնաւորաց, և միւս կողմերի շէնքերը, փռատուն, հացատուն, ամբար, և այլ զանազան մեծ ու փոքր սենեակները՝ բոլորն քարուկիր շինութիւն

Աւանդութիւնն կայ որ Ջուղայեցւոց գաղթած ժամանակը Շահաբբասն նոցա սիրտն գրաւելու, մանաւանդ թէ խնդիրներին յարգելու համար այս Ամենափրկիչ վանքի հողէն և քարերէն (ինչպէս և Էջմիածնի) առնել տալով ուղտերով Սպահան, այն տեղ մի և նոյն անուամբ վանք շինել տուած է. և այս այն Ամենափրկիչ վանքն է Նոր Ջուղայի, ուր կնստի տեղւոյն Առաջնորդն. և այդ վանքին միայն Շահաբբասն ի շնորհուկս Ջուղայեցւոց իրաւունք տուած է զանգակ հարկանելու:

Տաճարի և հարաւային պարսպի մէջ տեղ կայ մահարձան մի փառաւոր —

բազդրութեամբ, բայց ափսոս անմերձա-
նալի Մասեացին մաշուած արձանագրերն։
Արեւմտակողմն գերեզմանատանս կըղնէ
աղբիւր մի համեղաջուր՝ շրջապատուած
կամարաշատաղարթ ծառերով. այս ծառերն
բնակիչք Ջուղայի կկոչեն ''Աղանքի բաղ-
չայ,, եւ կասեն թէ որ ձեռն տայ այդ ծա-
ռերին՝ կպատժուի։ Այս աղբեր ջուրն
լերան միջէն հատեալ անցքով, խողո-
վակներով տարած է Երասխայ Հարա-
ւային եզերքին տարածուած, վանքի այ-
գին ոռոգելու. այգւոյ ցանկի Մասեացոց քն
միայն կանանութն այժմ. իսկ անուն այգւ-
ւոյս բնակիչք կասեն ''Մ_անքի ծախուած
բաղ,, Ջրանցքի անունէն առած։
Ջուղայի Հանդէպն եւ մօտն է ''Կռան-
բուղաղ,, կոչեցեալ բարձր եւ ընդարձա-
կանիստ լեառն, ուստի դուրս կգայ բնական
Ջրաղացաքար, որոյ վերայ գլխաւոր աշ-
խատողներն Ջուղայեցիք են։

## Ջամալդին Նոր.

Ջուղայէն երկու ժամու ճանապարհ հեռի դէպ ի հիւսիս կանկանի այս գիւղն, գիւր ակեղուոյ վերայ, բնակութիւն քառասնաչափ Մահմետական գերդաստանաց, որոնք կպարապին երկրագործութեամբ, բայց աղքատ են եւ սակաւաշխատ։ Այս գիւղիս մօտն է «Աքի-Մամատ» կոչուած Նուրիբեկեան ձորակը, որոյ մէջ կան սուրբ համարուած ծառեր, ուր զոհիւք ու խոսի եւ երկրպագութեան կգան Ջամալդինեցիք. եւ այդ ծառերի մէկ ճիւղին անգամ ձեռն տալ չհամարձակին։ Հին Ջամալդին Նորի արեւելակողմն է հինգ վերստ հեռաւորութեամբ, ուր կան շատ աւերակներ, որոց մէջ եւ մնացորդք թաղակապ քարաշէն բաղանեաց։

## Դաշէն.

Հին Ջամալդինի արեւելակողմն եւ սահմանակից, Երնջակ գետի վերայ ձգուած

## Պզնուտ.

Երազինի հիւսիսային արեւմտակողմն կէս ժամ, հեռի կանկանի այս գիւղ՝ բնակութիւն երկհարիւրաչափ պաղթանկան Հայ գերդաստանաց. խիստ արգաւանդ է նոյնպէս և տեղւոյս հողը, բայց ջրոյ սակաւութեան պատճառաւ չի կարող աշխատաւէր բնակչաց աւելի միջոց տալ վաստակելու, որք ընդհանրապէս ժրաջան են, ջերմեռանդ և հաւատաշատ, միևնոյն ժամանակ և խիստ նախապաշարեալք. և արբեցողք, և գլխաւոր ըմպելին սոցա Գողթան գաւառի թթի օղին է. Աջերնին կան բաւական հարուստ գերդաստանք, և շատերը կպարապեն նաև առեւտրով. ունին եկեղեցի մի հասարակ փայտածածք։ 1871 թուականի. խօլերայով այս տեղ մեռան եօթանասուն անձինք։

## Խաչափարախ.

Ապրակունիքէն ժամու կիսոյ ճանապարհ հեռի դէպ ի հիւսիս Թերակղզւոյ պէս երեք կողմէն լեռներով և բլուրներով շրջապատուած ընդարձակ դաշտի մի մէջ շինուած է այս գիւղն, բնակարան քառասուն տան Մահմետականաց, որոնք կպարապին տուարածութեամբ և երկրագործութեամբ. Հին Խաչափարախը Նորի արևմտակողմն, երեք վերստ հեռու կանկանի, պահելով ցարդ բազմաթիւ շինուածոց աւերակներն. և երևի թէ ջրոյ նուազութեան պատճառաւ անմարդացած է. Նոր գիւղն ունի աղբիւր մի, որոյ ջուրն ժողովուելով լճակի մէջ գործ կը դրուի ըստ պիտոյից. գիւղին մէջտեղ կանգնած է հողաշէն բուրգ մի՝ որ շատ հին չերևի. այս տեղէն մտիկ տուողին չքնաղ տեսարան կընծայեն Մասեաց սպիտակափառ գագաթը, և Նախիջևանի այգեստանեայք: Ինչպես "Խաչափա-

րախ,,՝ խաչ և փայտակ բաքերը արտասա-
նելով, գուցէ ունի իւր մէջ մի կեանքի
կամ անցքի մի՝ այժմ անյայտացած, ցե-
ղատակարան։ Լսած լինելով որ այս կող-
մերի Մահմետականաց աչքին անխածելի
և նուիրական ուխտատեղ մի կայ ‚‚Բաշա-
րի— քէարը,, անունով, կամեցայ տեսնել.
ուղղելով ձիոյ ընթացքը դէպ ի արեւելք,
և չափելով բլուրներն ու ձորակներն,
հանդիպեցանք փոքրիկ բլրակի մի, որոյ
վերայ կար ահագին քարակոյտ, և նորա
մէջ բուսած գժնիկ ծառ մի կարճահասակ,
գոյնզգոյն հանդերձից կտորներով ծան-
րաբեռնուած. Հարցմունք արած ժամանակ
լսեցի տեղական աւանդութիւնն թէ, սա
ճգնաւորաց շան գերեզման է. երեք սուրբ
մարդիկ փախչելով Լանկթամուրի աս-
պատակաւորաց երեսէն, ամրացած են
սուրբ այրին մէջ (որոյ համար պիտի խօ-
սինք). իսկ նոցա արդար շունն մնալով
այս տեղ, սպանուել է և թաղուել, որ
մինչև ցայժմ ցոյց տուած է և ցոյց կուտայ

ռաւ ասել է այլ։ Նշանակութիւն. «Ով որ սրտին խորհուրդ ունենայ, կասեն տեղացիք, կերթայ այս կաթանքի տակ կը կանգնի. եթէ ջուրը կաթեց վրան, ասել է որ խորհուրդը կկատարուի»։



# ՍՐԲԱԳՐՈՒԹԻՒՆ

| Երես | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| Ե | 8 | որոնք . . . | որուն . |
| Զ | 3 | խնկի գաղթ. | խնկի և գաղթ. |
| ,, | | Սեդրակեանց | Սեդրակեան |
| 3 | 8 | տամոն . . | դամոն |
| ,, | 17 | գրեթէ տես | գրեթէ շատ տես. |
| 10 | 11 | մածովի . . | մածունի |
| 12 | 13 | վերջնոցն . . | վերջնոյն |
| 13 | 14 | գգգմամբ . . | գդչմամբ |
| 46 | 5 | ցիցն . . . | ցեցն |
| 62 | 18 | հաւկաւիթ . | հաւկիթ |
| 64 - 65 | 22 - 18 | փնացել . . | ջանացիլ |
| 81 | 8–9 | անանքապդ | Անքապդ |
| 89 | 15 | Հեռի . . . | Հեռի։ Ըստ պատմելոյ Ստեփաննոսի Օրպելեան, այս ամրոցն, Սիւնեցի Սիսակազարմ իշխանաց մեկի կինն, Երնջիկ անուն՝ է շինած, որոյ անուամբ և կոչուել են բերդն և գաւառն։ «Իսկ մի ոմն ի կանանց նոյն նահապետացն Երնջիկ անուն, շինէ և զանհնարին ամուրն Երնջակ. և յիւր անուն բերդն և գաւառն կոչի Երնջակայ. և գնեն ի նմա տուն զանձու և հարկաց աշխարհին»։ (Տես Պատմ. Նահանգ. Սիսական, արար Ստեփ. Արքեպ. Սիւնեաց, ի լոյս ընծայեաց Կ. Վ. Շահնազ. Փարիզ, 1859. հատ Ա. գլ Գ. երես 52)։ |
| 91 | 6 | վարոցներով . | վարոցներէն |
| 128 | 9 | .. ւորելոյ | ... ւորելոց |